



# Խնդրում եմ...

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

Ձմե՛ռ, դո՞ւ ես ծյունել արդյոք
Վարսերը իմ տատիկի,
Դո՞ւ ես մարել սառը շնչով
Կրակը իր աչքերի:

Եթե դու ես, խնդրում եմ քեզ,
Գոնե այնպե՛ս արա, որ
Իմ մայրիկի վարսերին սև
Ձյունդ չիջնի ոչ մի օր:

# Արև մի վառ...

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Իզուր չէ, որ արևին
Անվանում են մարդիկ մայր.
Մորս սիրտը իմ ճամփին
Ջերմ արև է մի անմար:

Արև մի վառ, որ լույսը
Չի տալիս լոկ ցերեկով
Ու չի ծածկում երեսը
Ո՛չ ամպերով, ո՛չ մեգով:

Ցոլքը սարի ետևից
Նրա լույսն է ինձ հասնում.
Իզուր չէ, որ արևին
Մարդիկ մայր են անվանում:





Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

# Մայրս

Ռ. ՎԱՀԱՐՁԱԴԵ

Ո՛չ գրում է, ո՛չ էլ կարդում,
Գիր չգիտե մայրս բնավ,
Բայց արի տես,
Նա ինձ հաշվել սովորեցրեց:
Նա ինձ ասաց
Ամիսն ինչ է, տարին ինչ է,
Չարը ինչ է, բարին ինչ է:
Ուսուցիչ է ինձ համար մեծ
Մարդկանց կյանքի, բախտի համար,
Շատ կարևոր անուշ լեզվով
Ինձ դաս տվեց:

Շտկեց ճամփաս՝
Որտեղ քայլս մոլորեցի,
Մարդ մնալու արդար լեզուն
Իմ մայրիկից սովորեցի...
Այդ լեզվով եմ ես ճանաչել,
Խնդությունն ու վերքը սրտիս,
Այդ լեզվով եմ ես ստեղծել
Ամենալավ երգը սրտիս...
Ես՝ ոչինչ եմ,
Իմ մայրիկն է իմ երգերի զուլալ ակը,
Իմ մայրիկն է իմ գրքերի հեղինակը:

Թարգմ. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ



# ՄԻ ՔԱՆԻ ԽՈՐՀՈՒՐԴ ԱՂՋԻԿՆԵՐԻՆ՝ ՍԱՆՐՎԱԾՔԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ















Որքան կարճ լինի մազերի կտրվածքը և որքան սանրվածքը պարզ, այնքան ավելի հեշտ կլինի նրանց կոկիկ պահելը, լվանալն ու սանրելը: Ինչ խոսք, որ սանըրվածքը անպայման պետք է սազի դեմքին: Թող դասարանի ամենամոդայիկ սանրվածքը չլինի քոնը, թող նման չլինի շատերի և կամ ընկերուհուդ սանրվածքին, դրա փոխարեն լինի միայն քոնը և հատկապես այնպիսին, որը շատ սազի քեզ:

Մանկական մոդաների հանդեսում (օրինակ՝ էստոնական «Siluett» երեխաների ճամար) դուք գուցե հեշտությամբ չգըտնեք ձեզ անհրաժեշտ սանրվածքը: Համենայնդեպս հիշեցեք մի քանի խորհուրդ. եթե շատ լայն ճակատ ունեք, ուրեմն ճակատին մազափունջ (челка) թողեք, եթե շատ կլոր դեմք ունեք, մազերը թող իջնեն այտերի վրա, և եթե ցից ականջներ ունեք, մազերը կտրեք ականջներից ներքև և կամ ծածկեք մազերով:

Երկար ու գեղեցիկ մազերը չարժե կտրել: Ի դեպ, կարճ մազերի դեպքում վիզը բարակ ու երկար է թվում: Նրանք, ովքեր չեն ծուլանում մազերը հյուսել, ավելի լավ է մեկ կամ երկու հյուս ունենան: Կարելի է նաև ծոծրակի մոտ կամ մազերի ծայրին ժապավեն կապել:

Այս աղջիկների նման, դուք էլ հարդարեք ձեր սանրվածքը: Սկզբում նայեք, թե ինչպիսին է եղել նրանց սանրվածքը առաջ, և հետո փորձեք գտնել յուրաքանչյուրին ձախ կողմի նկարների մեջ:

















Մի շաբաթ ես ու Վաչիկը Անուշիկի հետ չէինք խոսում: Բայց երբ առավոտյան Վաչիկը եկավ ու առաջարկեց հաշտվել նրա հետ, ես նույնիսկ չէի հիշում, թե ինչու ենք խռովել նրանից:

— Հաշտվենք,— համաձայնեցի ես:

— Նրան պետք է նվեր տանք,— ասաց Վաչիկը:

— Ա՜յդ էր պակաս,— ասացի ես,— թող Անուշիկը մեզ նվեր տա, եթե ուզում է խոսենք իր հետ:

— Չէ՛, այդպես չի լինի,— ասաց Վաչիկը,— ախր այսօր Մարտի ութն է:

Իսկապես, ո՜նց էի մոռացել: Ուրիշ ելք չկա, եթե Մարտի ութն է, ուրեմն մե՛նք պետք է նվեր տանք:

— Արի ծաղի՞կ նվիրենք,— առաջարկեցի ես:— Հայրիկս մայրիկիս միշտ ծաղիկ է նվիրում: Երևի այսօր էլ գնացել է ծաղիկ գնելու:

— Չէ՛,— ասաց Վաչիկը,— երևի Անուշիկի հայրիկն էլ ծաղիկ կնվիրի Անուշիկի մայրիկին, հետո Անուշիկը իր ծաղիկը ինչպե՞ս կտարբերի մայրիկի ծաղիկից:

— Ճիշտ է,— հառաչելով համաձայնեցի ես:

— Ափսոս, որ Անուշիկը աղջիկ է,— ասաց Վաչիկը,— թե չէ նրան ֆուտբոլի գնդակ կնվիրեինք: Իմ գնդակը բոլորովին նոր է:

— Է՜հ,— ասացի ես,— տղաներին Մարտի ութին նվեր չեն տալիս:

— Ճիշտ է,— այս անգամ էլ Վաչիկը հառաչեց:

Մենք լռեցինք ու սկսեցինք մտածել:

— Ավելի լավ է, Անուշիկի հետ վաղը հաշտվենք,— առաջարկեցի ես:— Վաղը մարտի իննն է, իսկ մարտի իննին ոչ ոքի ոչինչ չեն նվիրում:

— Չէ՛,— ասաց Վաչիկը,— ամբողջ հետաքրքրությունն էլ դրա մեջ է, որ նվեր տանք ու հաշտվենք: Նվերը ուշադրության նշան է:

Այդ ժամանակ ես ասացի.

— Ծատ լավ, ենթադրենք, ես Անուշիկն եմ, դու ինձ ի՞նչ կնվիրեիր:

Վաչիկը մտածեց, մտածեց, գլուխը քորեց ու ասաց.

— Կնվիրեի իմ հոլը: Նորը, որ քեզ դուր էր գալիս:

— Անխե՜լք,— բարկացա ես,— ախր ես Անուշիկն եմ: Աղջիկները հոլ չեն խաղում:

— Մոռացա,— ասաց Վաչիկը:—Ախր դու նման չես Անուշիկին:

— Աչքերդ փակած մտածիր,— խորհուրդ տվեցի ես:

Վաչիկն այդպես էլ արեց ու քիչ հետո ասաց.

— Կնվիրեի սարյակի բույնը:

— Շնորհակալություն,— նորից բարկացա ես:— Սարյակի բույնը ինչքան քոնն է, այնքան էլ իմն է: Միասին ենք սարքել:

— Բայց դու ոչ թե Հրաչիկն ես, այլ՝ Անուշիկը:

— Ճի՜շտ է,— ուրախացա ես:

Մենք այլևս երկար չմտածեցինք: Վերցրեցինք սարյակի բույնը ու գնացինք Անուշիկենց տուն: Դուռը Անուշիկի հայրիկը բացեց ու մեզ հրավիրեց ներս: Միայն թե մեզ ոչ մի կերպ չէր հաջողվում ներս մտնել, որովհետև բույնը մի կողմից Վաչիկն էր բռնել, մյուս կողմից ես, իսկ դուռը երկու հոգու համար նեղ էր:

— Դուք ավելի լավ է հերթով ներս մտեք,— խորհուրդ տվեց Անուշիկի հայրիկը:

— Չենք կարող,— ասաց Վաչիկը,— սա նվեր է:

— Ընդհանուր նվեր,— ասացի ես:— Միասին պիտի տանենք:

Վերջապես մեզ հաջողվեց ներս խցկվել ու մենք մտեցանք Անուշիկին:

— Բարև՛,— ասաց Վաչիկը:— Սա քեզ նվեր ենք բերել: Մարտի ութի առթիվ:

— Մենք երեկ քիչ էր մնում կռվեինք, թե ում պատշգամբում ենք կախելու բույնը,— ասացի ես,— իսկ հիմա ուզում ենք, որ սարյակի բույնը քոնը լինի:

— Նվերը ուշադրության նշան է,— ասաց Վաչիկը,— կարևոր չէ, թե ինչ ես նվիրում: Կարևոր է, որ հիշում ես ու նվիրում: Մայրիկս այդպես է ասում հայրիկին, երբ նա մոռանում է նվիրել:

— Վերցրո՛ւ,— ասացի ես,— շնորհավորում ենք:

Անուշիկը վերցրեց բույնը: Վերցրեց ու ժպտաց:

— Շնորհակալություն,— ասաց նա,— շա՜տ-շատ շնորհակալություն:

Անուշիկի մայրիկը մեզ թխվածքով հյուրասիրեց, իսկ հետո մենք բոլորս դուրս եկանք բակ դիտելու, թե Անուշիկի հայրիկն ինչպես է բույնը ամրացնելու ծառին: Ախր ես ու Վաչիկը բարձր շենքում ենք ապրում, իսկ Անուշիկենք ցածր տուն ունեն, տան առաջ էլ՝ ծառեր:

Հեռվից, ծառի վրա, բույնը շատ գեղեցիկ էր: Մենք չափազանց ուրախ էինք, որ գլխի ընկանք բույնը նվիրել Անուշիկին, և Անուշիկն էլ այն նվիրեց սարյակներին, որոնք շուտով՝ ապրիլին գալու են:



ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ




Լ. ՊԱՆՏԵԼԵՅԵՎ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

...Հետևյալ առավոտ Վալյա Մորոզովան դպրոց եկավ շատ ուշ, զանգից անմիջապես առաջ: Երբ նա դասարանում երևաց, իսկույն խոր լռություն տիրեց, թեև մինչ այդ այնպիսի աղմուկ էր տիրում, որ լուսամուտի ապակիները զնգում էին, իսկ դասարանի կոլեկցիայի չորացած թիթեռնիկները, ինչպես կենդանի արարած, իրենց թևիկներն էին շարժում:

Երբ կարեկցաբար ու տխուր բոլորը նայեցին նրան, Նորեկը հասկացավ, որ Լիզա Կումաչևան արդեն պատմել է երեկ փողոցում ունեցած իրենց խոսակցությունը: Նա կարմրեց, շփոթվեց, «Բարև ձեզ» շշընջաց, և ամբողջ դասարանը մի մարդու նման նրան պատասխանեց.

— Բարև՛, Մորո՛զովա:

Մի գիշերում նա ավելի էր վտիտացել ու նիհարել, բայց ինչպես և երեկ, նրա բարակ, խարտյաշ ծամերը խնամքով հյուսված էին և յուրաքանչյուր հյուսի վրա օրորվում էր մետաքսե կանաչ ժապավենը:

Երբ զանգը տվին, Մորոզովայի և Կումաչևայի նստարանին մոտեցավ Վալոդիկ Բեսսոնովը:

— Բարև՛, Մորո՛զովա, բարի լո՛ւյս,— ասաց նա:— Այսօր լավ եղանակ է: Միայն քսաներկու աստիճան: Իսկ երեկ քսանինն էր:

— Այո՛,— ասաց Մորոզովան:

Վալոդիկը կանգ առավ, լռեց, ծոծրակը քորեց և շարունակեց.

— Հետաքրքիր է, Կիևը մե՞ծ քաղաք է:

— Մեծ:

— Լենինգրադի՞ց էլ մեծ:

— Քիչ փոքր:

— Հետաքրքիր է,— ասաց Վալոդիկը՝ գլուխը շարժելով:

Նա նորից լռեց ու ապա ավելացրեց.

— Հետաքրքիր է, ուկրաիներեն ինչպե՞ս են ասում շանը, հը՞:

— Ինչպե՞ս,— կրկնեց Մորոզովան:— Այնպես, ինչպես ռուսներն են ասում:

— Հը՛մ,— ասաց Վալոդիկը, ապա հանկարծ ձայնը շնչեց, կարմրեց, քիթը վեր քաշեց և փնթփնթաց.

— Դու... այդ... ինչպես ասեմ... մի՛ նեղանա, որ երեկ ես քեզ «լալկան-տզզան» անվանեցի:

Սկիզբը՝ № 2-ում:

Նորեկը ժպտաց և ոչինչ չպատասխանեց: Իսկ Վալոդիկը մի անգամ էլ քիթը վեր քաշեց և գնաց իր տեղը: Մի րոպե հետո Մորոզովան լսեց նրա հնչեղ, շնչասպառ ձայնը.

— Երեխանե՛ր, գիտե՞ք, ուկրաիներեն ինչպե՞ս են ասում՝ շուն: Չգիտե՞ք: Իսկ ես գիտեմ...

— Դե, հետաքրքիր է, ուկրաիներեն ինչպե՞ս են ասում՝ շուն:

Վալոդիկը ետ նայեց: Դռան մոտ դասամատյանը թևատակին կանգնել էր նոր ուսուցչուհին՝ Ելիզավետա Իվանովնան:

Նա փոքրիկ սեղանին դրեց դասամատյանը, կարգավորեց ծոծրակի մազերը և ժպտաց.

— Դե, ինչպե՞ս են ձեր դասերը:

— Ոչինչ, Ելիզավե՛տա Իվանովնա, շնորհակալությո՛ւն: Հաջո՛ղ են,— գոռաց Վալոդիկը:

— Հիմա կտեսնենք,— ասաց ուսուցչուհին՝ բաց անելով դասամատյանը:

Նրա հայացքը սահեց անցավ աշակերտների ցուցակի վրայով: Ովքեր այդ օրը իրենց այնքան էլ վստահ չէին զգում թվաբանությունից, կծկվել ու զգուշանում էին: Միայն Վալոդիկ Բեսսոնովն էր անհամբեր ոստոստում վերջին նստարանին, ըստ երևույթին ծրագրելով, որ ամենից առաջ իրեն կկանչեն:

— Մորո՛զովա, գրատախտակի մո՛տ,— ասաց ուսուցչուհին:

Չգիտես ինչու, դասարանով մեկ դժգոհություն բարձրացավ: Հավանորեն բոլորին թվում էր, թե այնքան էլ լավ չէր, որ Մորոզովային կանչեց, հարկավոր էր նրան այսօր չանհանգստացնել:

— Կարո՞ղ ես պատասխանել,— նորեկին հարցրեց ուսուցչուհին:— Դասդ սովորե՞լ ես:

— Սովորել եմ: Կարող եմ,— լսելի պատասխանեց Մորոզովան և մոտեցավ գրատախտակին:

Նա դասը վատ պատասխանեց, շփոթվեց, շշկըլվեց, և Ելիզավետա Իվանովնան մի քանի անգամ ուրիշների օգնությանը դիմեց: Բայց և այնպես նրան բաց չթողեց և պահեց գրատախտակի մոտ, թեև բոլորը տեսնում էին, որ նորեկը հազիվ էր կանգնում ոտքի վրա, ձեռքում կավիճը դողդողում էր և գրատախտակին թվանշանները թռչկոտում էին, չէին ուզում ուղիղ կանգնել:

Լիզա Կումաչևան քիչ էր մնում լաց լիներ: Նա



չէր կարողանում հանգիստ նայել, թե ինչպես Վալյա Մորոզովան տասներորդ անգամ գրատախտակի վրա խնդիրը լուծում էր ոչ ճիշտ, ջնջում էր և նորից գրում, նորից ջնջում և նորից գրում: Իսկ Ելիզավետա Իվանովնան նայում էր նրան, գլուխը օրորում և ասում.

— Ո՛չ, ճիշտ չէ՛: Դարձյա՛լ ճիշտ չէ:

«Ա՜խ,— մտածեց Լիզան,— եթե Ելիզավետա Իվանովնան իմանար: Եթե նա իմանար, թե ինչքան ծանր է այժմ Վալյայի վիճակը: Նա բաց կթողներ նրան, չէր շարունակի տանջել»:

Նա ուզում էր վեր թռչել տեղից և գոռալ. «Ելիզավե՜տա Իվանովնա, հերի՛ք է, բավակա՜ն է...»

Նորեկը վերջապես կարողացավ խնդիրը ճիշտ լուծել: Ուսուցչուհին արձակեց նրան և դասամատյանում նշանակեց թվանշանը:

— Այժմ գրատախտակի մոտ կխնդրենք Բեսսոնովին,— ասաց ուսուցչուհին:

— Այդպե՞ս էլ գիտեի,— գոռաց Վալոդիկը՝ առաջ գալով:

— Իսկ դասերդ գիտե՞ս,— հարցրեց ուսուցչուհին:— Խնդիրները լուծե՞լ ես: Դժվար չէ՞ր:

— Ի՜՜նչ: Ջրի պես գիտեմ,— ասաց Վալոդիկը՝ գրատախտակին մոտենալով,— ես տասը րոպեում ութն էլ լուծել եմ:

Ելիզավետա Իվանովնան նրան խնդիր տվեց նույն կանոնով: Վալոդիկը կավիճը վերցրեց և մտածեց: Այդպես մտածեց առնվազն հինգ րոպե: Նա մատների մեջ շուռ ու մուռ տվեց կավիճի կտորը, գրատախտակի անկյունում գրեց ինչ-որ փոքրիկ թվանշաններ, ջնջեց, քորեց քիթը, քորեց ծոծրակը:

— Հը՞,— վերջապես չկարողացավ համբերել Ելիզավետա Իվանովնան:

— Մի րոպե,— ասաց Վալոդիկը:— Մի րոպե... Հենց հիմա... ինչպես թե:

— Նստի՛ր, Բեսսո՛նով,— ասաց ուսուցչուհին:

Վալոդիկը դրեց կավիճը և ոչ մի խոսք չասելով գնաց իր տեղը:

— Տեսա՞ք,— դիմեց նա երեխաներին:— Միայն հինգ րոպե գրատախտակի առաջ կանգնեցի և մի ամբողջ «երկու» վաստակեցի:

— Այո՛, այո՛,— ասաց Ելիզավետա Իվանովնան, մատյանից կտրվելով:— Մի խոսքով՝ ջրի պես գիտեիր...

Դասամիջոցին մի քանի աղջիկ հավաքվեցին միջանցքում եռացրած ջրի կաթսայի մոտ:

— Գիտե՞ք ինչ, աղջիկնե՛ր,— ասաց Լիզա Կումաչևան,— ես ուզում եմ խոսել Ելիզավետա Իվանովնայի հետ, նորեկի մասին նրան պետք է պատմել... որպեսզի նա այդքան խիստ չլինի նրա հետ: Ախր նա չգիտի, թե Մորոզովային ինչպիսի դժբախտություն է պատահել:

— Գնանք խոսենք նրա հետ,— առաջարկեց Շմուլինսկայան: Եվ աղջիկները խմբով ուսուցչանոց վազեցին:

Ելիզավետա Իվանովնան կանգնած էր լուսամուտի մոտ: Երբ Կումաչևան և մյուսները ներս մտան, նա շտապ շուռ եկավ, մոտեցավ սեղանին և թեքվեց տետրակների կույտի վրա:

Աղջիկները տեսան, որ նա հապճեպորեն թաշկինակով սրբում է աչքերը:

Անակնկալի եկած՝ նրանք քարացան դռան առաջ:

— Ի՞նչ էիք ուզում,— ասաց նա ուշադիր թերթելով տետրակը և մի բան ընդգծելով այնտեղ:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— ասաց Լիզան առաջանալով,— մենք ուզում ենք... այսինքն... մենք ուզում ենք խոսել Վալյա Մորոզովայի մասին: Գիտե՞ք, որ նրա հայրը...

— Այո՛, այո՛,— ընդհատեց Ելիզավետա Իվանովնան,— այդ ես գիտեմ: Լավ է, որ դուք նրա համար հոգ եք տանում: Միայն չպետք է ցույց տալ, որ նրան խղճում եք և որ նա ուրիշներից դժբախտ է: Նա շատ թույլ է... օգոստոսին դիֆտերիտով հիվանդացավ: Պետք է նա քիչ մտածի իր վշտի մասին: Սիրելինե՛րս, մեր ամենաթանկ, ամենասիրելի բանը՝ մեր հայրենիքը վտանգի մեջ է: Ինչ վերաբերում է Վալյային, հուսանք, որ նրա հայրը ողջ է:

Այդ ասելով՝ նա նորից կռացավ տետրակների վրա:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— փնչացնելով ասաց Շմուլինսկայան,— իսկ դուք ինչո՞ւ եք լաց լինում:

— Ի՞նչ,— ուսուցչուհին դարձավ նրանց.— Ի՞նչ եք ասում: Ձեզ այդպես է թվացել: Հավանաբար ցըրտից աչքս արցունքոտվել է: Հետո, այստեղ այնքան են ծխել...

Եվ նա ձեռքը թափահարեց իր դեմքի առաջ:

Դրանից հետո Ելիզավետա Իվանովնային երբեք արտասված աչքերով չտեսան: Դասարանում, դասերի ժամանակ, նա միշտ զվարթ էր, կատակասեր, ծիծաղում էր, իսկ երկար դասամիջոցներին բակում ձնագնդի էր խաղում աշակերտների հետ:

Մորոզովայի հետ նա վարվում էր այնպես, ինչպես մյուս բոլոր երեխաների հետ, և թվանշաններ էր դնում առանց որևէ զիջումի:

Մորոզովան սովորում էր անհավասար. մեկ պատասխանում էր «գերազանց», մեկ՝ հանկարծ իրար ետևից ստանում էր «վատ»: Եվ բոլորը հասկանում էին, որ այդ ոչ թե նրանից է, որ նա ծույլ է կամ անկարող, այլ, որ հավանաբար տանը ամբողջ գիշերը լաց է եղել և մայրն էլ հավանաբար լաց է եղել: Դե, ինչպե՞ս պարապի այդ պայմաններում:

Դասարանում Մորոզովան էլ ոչ մի անգամ չարտասվեց: Միայն մի անգամ նա չկարողացավ զսպել իրեն: Փետրվարի սկզբին էր. Դպրոցում նվերներ հավաքեցին՝ ռազմաճակատ, մարտիկներին ուղարկելու համար: Դասերից հետո, երբ արդեն մթնշաղ էր, երեխաները դասարանում հավաքվեցին, տոպրակներ կարեցին, մեջը կոնֆետ, խնձոր և ծխախոտ լցրին: Բոլորի հետ նաև աշխատեց Վալյա Մորոզովան: Եվ հենց այդ միջոցին, երբ նա կարում էր տոպրակներից մեկը, լաց եղավ: Բոլորը այդ տեսան և հասկացան, որ հավանաբար այդ րոպեին նա մտածում էր հոր մասին, բայց ոչ ոք նրան ոչինչ չասաց:



Իսկ հաջորդ օրը Մորոզովան դպրոց չեկավ:

Ուսուցչուհին մտավ դասարան, ինչպես միշտ, զվարթ և սիրալիր բարևեց, նստեց սեղանի առաջ և սկսեց թերթել դասամատյանը:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— տեղից գոչեց Լիզա Կումաչևան,— գիտե՞ք ինչու Մորոզովան չկա...

— Մորոզովան հիվանդացել է,— ասաց Ելիզավետա Իվանովնան:

— Ի՞նչ եք ասում: Որտեղի՞ց գիտեք: Նրա մայրիկը եկե՞լ էր:

— Այո՛,— պատասխանեց Ելիզավետա Իվանովնան,— մայրիկը եկել էր:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— գոռաց Վալոդիկ Բեսսոնովը,— գուցե նրա հա՞յրն է գտնվել:

— Ո՛չ,— գլուխը օրորեց Ելիզավետա Իվանովնան և անմիջապես կռացավ դասամատյանի վրա, ուժգին փակեց այն ու ասաց.— Թամարա Բարինովային խնդրում եմ գրատախտակի մոտ:

... Հաջորդ օրը ևս Մորոզովան չերևաց: Լիզա Կումաչևան և ուրիշ մի քանի աղջիկներ որոշեցին դասերից հետո գնալ նրան տեսության: Մեծ դասամիջոցին նրանք միջանցքում մոտեցան ուսուցչուհուն և ասացին, որ ուզում են հիվանդ Մորոզովային այցելել: Հնարավոր չէ՞ր արդյոք իմանալ նրա հասցեն:

Ելիզավետա Իվանովնան մի րոպե մտածեց և ասաց.

— Չէ՛, աղջկե՛րք... Մորոզովան կարծես անգինայով է հիվանդ, իսկ այդ վտանգավոր է: Կարիք չկա նրան տեսության գնալ:

Իսկ հետևյալ օրը հանգիստ էր:

Հանգստի նախօրյակին Լիզա Կումաչևան սովորեց դասերը, բոլորից ուշ պառկեց և պատրաստվեց երկար ու խոր՝ մինչև ժամը տասը կամ տասնմեկը քնելու: Բայց դեռ բոլորովին մութ էր, երբ նրան զարթնեցրեց զանգի խլացուցիչ ձայնը: Կիսաքուն վիճակում նա լսեց, թե ինչպես մայրը բացեց դուռը, ապա լսեց մի ծանոթ ձայն և անմիջապես չկարողացավ հասկանալ, թե ո՞ւմ ձայնն էր:

Շնչասպառ լինելով և բառերը կուլ տալով՝ մեկը բարձրաձայն խոսում էր խոհանոցում:

Լիզան շտապ-շտապ հագնվելով, ոտքերը խոթեց վալենկաների մեջ և վազեց խոհանոց:

Ձեռքերը շարժելով՝ Վալոդիկ Բեսսոնովը ինչ-որ բան էր բացատրում Լիզայի մորը:

— Կումա՛չևա,— գոռաց նա Լիզային տեսնելուն պես,— չգիտե՞ս Մորոզովայի հոր անունը:

— Ո՛չ,— ասաց Լիզան,— ի՞նչ կա որ:

— Նա կապիտան չէ՞:

— Չգիտեմ: Իսկ ի՞նչ կա որ: Ի՞նչ է եղել:

Վալոդիկը լեզուն չլթացրեց, գլուխը օրորեց:

— Վատ է, եթե կապիտան չէ,— ասաց նա:

— Իսկ ի՞նչ կա որ,— համարյա գոռաց Լիզան:

— Հասկանո՞ւմ ես,— ասաց Վալոդիկը,— ես մի շուն ունեմ, անունը Տուզիկ է: Ամեն հանգստի օր նրան տանում եմ ման ածելու:

— Ի՞նչ Տուզիկ,— ոչինչ չհասկանալով հարցրեց Լիզան:

— Տուզիկ: Շուն: Բայց նրա մասին չէ: Մի խոսքով նրան տարա ման ածելու: Իսկ փողոցում խոսում էր բարձրախոսը: Եվ հաղորդում էր հրամանագիր: Հասկանո՞ւմ ես: Մարտիկների և հրամանատարների պարգևատրման մասին: Եվ մեկ էլ հանկարծ լսում եմ՝ հերոսություն և այլն ցուցաբերելու համար՝ Սովետական Միության հերոսի կոչում շնորհել էսկադրիլիայի հրամանատար կապիտան Մորոզով Իվանին... և ինչ-որ հայրանուն. ես չկարողացա հասկանալ, դժվար անուն էր...

— Էսկադրիլիայի հրամանատարի՞ն: Ճշմարի՞տ է,— ասաց Լիզան:

— Բանն էլ հենց այդ է… Ես կարծում եմ, կարող է պատահել այդ նա է։ Չէ՞ որ նա օդաչու է։

— Դե՛, այո՛, դե՛, իհա՛րկե,— ասաց Լիզան,— օ՜, ինչպե՞ս իմանանք՝ ինչ է նրա անունը։

— Ես արդեն քեզ ասացի, որ Իվան է… մոռացա միայն հայրանունը… Ֆակ-տի-լիս-տովիչ, կարծեմ։

— Իսկ գուցե նա չէ,— ասաց Լիզան։

— Դուք էլ Մորոզովների՛ մոտ վազեք,— խորհուրդ տվեց մայրը։— Դրանից լավ միջո՞ց։ Կգնաք և կիմանաք։

— Ես նրանց հասցեն չգիտեմ,— ասաց Լիզան՝ հազիվ զսպելով լացը։

— Ինչպե՞ս թե,— վախեցավ Վալոդիկը,— մի խաբի. չգիտե՞ս որտեղ է նա ապրում։

— Ո՛չ,— ասաց Լիզան,— միայն գիտեմ, որ Կոնվենսկի նրբանցքում, անկյունից առաջին կամ երկրորդ տունը։

— Է՜,— ասաց Վալոդիկը,— ի՜նչ հիմարն ես։ Այստեղ վազեցի, Տուզիկին էլ փողոցում թողեցի։ Կարծում էի դու կիմանաս։ Չէ՞ որ դուք ընկերուհիներ եք…

— Միայն գիտեմ, որ Կոնվենսկում են,— մտացրիվ կրկնեց Լիզան։— Անկյունից երկրորդ կամ առաջին տունը։ Կամ, գուցե երրորդը…

— Գուցե քսաներեքերորդը,— ասաց Վալոդիկը,— դե՛, հագնվի՛ր, գնանք։ Գուցե գտնենք…

Տասը րոպե հետո նրանք Կոնվենսկի նրբանցքում էին։

— Դարպասի մոտ կա մի տեսակ տախտակ,— ասաց Վալոդիկը,— այնտեղ գրված է, թե տան ո՛ր բնակիչը որ բնակարանում է ապրում։ Կփնտրենք Մորոզովներին։

Նրանք հինգ կամ վեց տուն անցան, ուշադիր նայեցին բոլոր տախտակները, բայց ոչ մի տեղ Մորոզովներ չկային։

Վալոդիկն արդեն սկսեց նախատել և ասել, որ հավանաբար Լիզան շփոթում է և ինքն իզուր փողոցում թողեց Տուզիկին։

Նա արդեն ուզում էր թքել ամեն ինչի վրա և գնալ փնտրելու իր Տուզիկին, երբ հանկարծ Լիզան բռնեց նրա ձեռքը։

— Բեսսո՛նով, տե՛ս,— ասաց նա,— Ելիզավետա Իվանովնան է գալիս։

Վալոդիկը նայեց և տեսավ, որ իսկապես գալիս է Ելիզավետա Իվանովնան՝ իրենց դասղեկը։ Նրանք վազեցին ընդառաջ։

— Ելիզավե՜տա Իվանովնա, բարև՛ ձեզ, բարի լո՛ւյս,— միաձայն խոսեցին նրանք։

Ուսուցչուհին վախեցած ընկրկեց։

— Բարև՛ ձեզ, երեխանե՛ր,— ասաց նա։

— Ելիզավե՛տա Իվանովնա,— խոսեց Վալոդիկը, չթողնելով, որ նա սթափվի,— չգիտե՞ք արդյոք՝ որտե՞ղ է ապրում Վալյա Մորոզովան։

— Ի՞նչ կա որ,— հարցրեց ուսուցչուհին։

— Օ՜, եթե իմանայի՜ք,— ասաց Լիզան,— ուղղակի չեմ կարող ասել, թե ինչքա՜ն ենք ուզում նրան տեսնել…

— Ելիզավե՛տա Իվանովնա, դուք նրանց տունը ստույգ գիտե՞ք,— ասաց Վալոդիկը։

— Այո՛,— մտածելով պատասխանեց ուսուցչուհին,— գիտեմ։ Մորոզովան հենց այստեղ, այս աղյուսե տանն է ապրում։

— Եվ բնակարա՞նը գիտեք։

— Եվ բնակարանը գիտեմ,— ասաց ուսուցչուհին։— Իսկ ի՞նչ է եղել։

— Հասկանո՞ւմ եք, Ելիզավե՛տա Իվանովնա,— ասաց Լիզան,— կարծեք թե նրա հայրը գտնվել է։

— Ո՞ւմ,— ասաց ուսուցչուհին։

— Վալյայի։

Երեխաները նկատեցին, թե ինչպես Ելիզավետա Իվանովնան գունատվեց, շրթունքները քաշվեցին և դժվար էր հասկանալ, նա ուզում է ծիծաղե՞լ, թե՞ լաց լինել։

— Ի՞նչ,— ասաց նա,— ի՞նչ եք ասում։

Երեխաները շփոթվելով և իրար ընդհատելով, պատմեցին այն, ինչ առավոտյան հաղորդել էին ռադիոյով։

Երբ հարցը հասավ կապիտան Մորոզովի հայրանվանը, Վալոդիկը նորից դեմ առավ։

— Ֆիլիկտ,— սկսեց նա,— կամ Ֆիլիկստ…



— Ֆեոկտիստովիչ,— ասաց ուսուցչուհին։

— Ճի՛շտ է, ճի՛շտ է,— բացականչեց Վալոդիկը,— Ֆեոկտիստովիչ։ Ելիզավե՛տա Իվանովնա, իսկ դուք որտեղի՞ց գիտեք…

Ուսուցչուհին ձեռքով ծածկեց աչքերը։

— Գնանք,— ասաց նա,— շուտ գնանք Մորոզովայի մոտ։

Եվ նա վազեց այնքան արագ, որ երեխաները հա-

## ԳԱՐՆԱՆ ՔԱՄԻՆ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Գարնան քամին՝ սրինգն առած,
Մտավ լիճը, սուլեց հանկարծ,
Սուլեց թե չէ, լիճն արթնացավ,
«Ա՜խ դու խելառ»,— քամուն ասավ:
Ու գառների ամբողջ մի հոտ,
Ճերմակ-ճերմակ ու փափկամորթ,
Փախավ դեպի ափը լճի,
Ցնծաց քամին չարաճճի:
Հետո գնաց գալար-գալար,
Գտավ մի զույգ ճաղորդալար,
Այնպես քնքուշ մատնահարեց,
Որ թխկենին կողքին պարեց:
Ի՞նչ մտածեց այդ նույն ժամին,
Երկինք թռավ գարնան քամին,
Ամպերն իրար վրա դիզեց,
Խառն ու շիտակ մի լավ գզեց,
Հետո թել-թել երկինքն ի վար
Անձրև թափվեց վարա՜ր-վարա՜ր...

գիվ էին հասնում ետևից, իսկ անցորդները կանգնած նայում էին նրանց:

— Այստեղ,— ասաց նա երեխաներին և թեքվեց դեպի աղյուսե մեծ շենքի դարբասը:

— Տեսնո՞ւմ ես, հո քեզ ասում էի,— հիշեցրեց Լիզան Վալոդիկին:

— Ելիզավե՛տա Իվանովնա,— ասաց Վալոդիկը,— մենք արդեն եղել ենք այստեղ: Այստեղ ոչ մի Մոռոզով չկա:

— Գնա՛նք, գնա՛նք, երեխանե՛ր,— կանգ չառնելով՝ ասաց Ելիզավետա Իվանովնան:

— Ելիզավե՛տա Իվանովնա, ճի՞շտ է,— ասաց Լիզան, երբ նրանք արդեն բարձրացել էին մութ աստիճաններից վեր,— գուցե դա իսկապես Վալյայի հայրն է:

— Այո՛, սիրելինե՛րս,— ասաց Ելիզավետա Իվանովնան:— Հենց նա է՝ Իվան Ֆեոկտիստովիչ Մոռոզովը, կապիտան, էսկադրիլիայի հրամանատար: Նա Վալյայի հայրն է:

Չորրորդ հարկի փոքրիկ հարթակի վրա ուսուցչուհին կանգ առավ, պայուսակից հանեց բանալին և այդ բանալիով բացեց կողպեքը: Երեխաների զարմանքը դեռ չէր անցել, երբ նա կրնկի վրա բացեց դուռը և ասաց.

— Խնդրեմ, համեցե՛ք:

Միջանցքը մութ էր:

— Զգո՛ւյշ,— ասաց Ելիզավետա Իվանովնան,— այստեղ սնդուկ կա:

Եվ չնայած այդ նախազգուշացմանը, այնուամենայնիվ Վալոդիկը կպավ այդ սնդուկին: Անակնկալից ճչաց:

— Մա՛մա, այդ դո՞ւ ես,— դռան ետևից լսվեց մի բարակ ձայն, և երեխաները ճանաչեցին Վալյա Մոռոզովայի ձայնը:

— Ես եմ,— ասաց Ելիզավետա Իվանովնան, բանալով դուռը:

— Այդքան շո՞ւտ եկար: Արդեն ճարե՞լ ես:

— Ո՛չ, աղջի՛կս,— ասաց Ելիզավետա Իվանովնան:— Լրագիր չգտա: Բայց մի տե՛ս, դրա փոխարեն ես քեզ ինչպիսի՜ հրաշալի, կենդանի լրագիր բերեցի...

Վալյա Մոռոզովան պառկած էր անկողնում: Բարձից գլուխը բարձրացնելով նա վախեցած ու զարմացած նայեց Վալոդիկին ու Լիզային, որոնք ոչ պակաս զարմացած ու ոչ պակաս վախեցած դեմ էին առել դռանը:

Մի պահ Վալյան նայեց նրան, ապա հանկարծ ճիչ արձակեց և գլխովին անհետացավ վերմակի տակ:

— Դո՛ւրս եկ, դո՛ւրս եկ,— ասաց մայրը,— այլևս բավական է որքան թաքնվեցինք: Վշտանում էինք առանձին-առանձին, իսկ ուրախանանք միասին...

Եվ նա այնքան բարձր ծիծաղեց, որ Վալյան չհամբերեց և գլուխը դուրս հանեց վերմակի տակից:

— Ի՞նչ,— ասաց նա:

Ելիզավետա Իվանովնան ծունկ չոքեց նրա մահճակալի մոտ և գրկեց աղջկանը:

— Վա՜լոչկա, հայրիկը կենդանի՜ է,— ասաց նա:

Մի քանի վայրկյան Վալյան ուշադիր նայեց նրան, ապա բարձի մեջ թաղեց գլուխը և լաց եղավ:

Եվ երբ նա գլուխը նորից բարձրացրեց, երեխաները տեսան, որ այլևս նա չէր արտասվում, այլ ծիծաղում էր: Եվ հենց այդ միջոցին, երբ նա ծիծաղում էր, և՛ Վալոդիկը, և՛ Լիզան, հանկարծ առաջին անգամ նկատեցին, որ նա շատ լավիկն է, որ նա սպիտակ ատամներ ունի և շա՜տ գեղեցիկ, ոսկեգույն վարսեր, և ամենագլխավորը, որ, ինչպես ջրի երկու կաթիլ, նման է Ելիզավետա Իվանովնային:

Երեխաները զարմացան, թեև իհարկե զարմանալու ոչինչ չկար:

Թարգմ. ՍՏԵՓԱՆ ԿՈՒՐՏԻԿՅԱՆԻ



# ՎԵՃ ԱՆՏԱՌՈՒՄ

ՍՈՒՐԵՆ ԱՅՎԱԶՅԱՆ

Անտառում թռչունների մեջ վեճ առաջացավ: Ագռավն ասաց.

— Ես եմ ամենալավ երգիչը, իմ ձայնով հիանում են աշխարհի բոլոր ագռավները. կը՛ռ-կը՛ռ-կը՛ռ:

— Կը՛ռ-կը՛ռ-կը՛ռ,— հաստատեցին մյուս ագռավները:

— Ավելի զզվելի բան չկա, քան ագռավի կռռոցը: Ա՛յ, ուրի՞շ է իմ երգը. չըթ-չըթ-չըթ,— ասաց կաչաղակը՝ պոչը վեր ու վար անելով:

—. Չըթ-չըթ-չըթ,— հաստատեցին բոլոր կաչաղակները:

— Անտառային աշխարհում իմ երգից թովիչ երգ չկա,— կաղամախու մամռոտ կոճղից բուն շողացրեց իր դեղին աչքերն ու բվվաց անտառով մեկ. բո՛ւ-բո՛ւ-բո՛ւ:

— Բո՛ւ, բո՛ւ, բո՛ւ,— հաստատեցին մյուս բուերը:

— Այս ի՞նչ ավելորդ վիճաբանություն է: Մոշահավի երգի հետ ոչ մի երգ չի կարող համեմատվել: Ապա մի լսե՛ք...— ու հովվի պես շվացրեց մոշահավը:

Եվ հանկարծ ինչ-որ տեղից լսվեց մի անուշ դայլայլ: Ո՞վ էր այդ երգիչը, որ չէր մասնակցում այս վեճին: Բոլորը մի պահ քա՜ր կտրեցին, և նորից ագռավը կռռաց.

— Ո՞վ է այս արագախոս-շատախոսը, որ չի մասնակցում մեր վեճին: Ապա մի գտնենք նրան: Գուցե նա էլ իրե՞ն կգովի...

Բոլորը թռան ձայնի ուղղությամբ: Եվ տեսան փոքրիկ թռչնակին, որ նստած թփի վրա շարունակում էր իր դայլայլը, շրջապատեցին նրան, և ագռավն ասաց.

— Թո՛ղ քո այդ ականջ ծակող ծվծվոցներն ու պատասխանի՛ր իմ հարցին. դո՞ւ ես լավ երգում, թե՞ ես,— ու կռռաց:

— Դո՞ւ ես լավ երգում, թե՞ ես,— հարցրեց կաչաղակն ու չըթչըթաց:

— Դո՞ւ ես լավ երգում, թե՞ ես,— հարցրեց բուն ու կոնչաց:

— Դո՞ւ ես լավ երգում, թե՞ ես,— շվացրեց մոշահավը:

Այսպես հարցրին բոլոր թռչունները և սպասեցին պատասխանի. Փոքրիկ թռչնակը շատ չսպասեցրեց: Նա բաց արեց իր անուշ բերանն ու ասաց.

— Անշուշտ դուք բոլորդ էլ լավ եք երգում ինքներդ ձեզ համար, բայց կա երգ, որով հիանում են ոչ միայն երգողն ու նրա ցեղակիցները, այլ բոլո՛ր-բոլո՛րը: Ինձ թվում է՝ դա է ամենալավ երգը:

Այսպես ասաց փոքրիկ թռչնա՛կը ու շարունակեց իր երգը: Երգեց այնպես, որ վեճը չշարունակվեց: Նրանք ակամա տարվել էին այդ երգով, թեև դեռ ամեն մեկն այն կարծիքին էր, որ իրեն պես երգիչ չկա անտառային աշխարհում: Իսկ սոխակը երգում էր, և թվում էր, թե լսում են նրան ոչ միայն մյուս թռչունները, այլև ծառերը, գետակները, լճակները: Եվ անգամ ծաղիկները նրա երգով էին գույներ առնում ու բուրում:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԻՋԻՐ, ԻՋԻՐ ՀԱՆԳՍՏԱՑԻՐ...

ԽԱՐՈՒԼ ԲՈԼՈՐՋՅԱՆ

Գարնան բուրմունքն առած թևիդ՝
Տուն ես եկել, իմ թռչնա՛կ,
Կարոտել ես քո հին բնին,
Դաշտերին մեր լայնարձակ:

Ձյունը շյուղին քո կպցրած,
Տե՛ս, պահել եմ անվնաս,

Որ չգտնես բույնդ քանդված
Եվ ուրիշ կողմ չգնաս:

Ինչքա՜ն, ինչքա՜ն թևածեցիր՝
Մինչև մեզ մոտ դու եկար,
Իջի՛ր, իջի՛ր հանգստացիր,
Ճամփան քո շատ էր երկար:

# ՁԱԽՈՐԴԸ

ՀԱՆՐԻ ՋԱՐՅԱՆ






ա հաղթանդամ էր, ակնոցավոր, ու միշտ ակնոցի տակից ժպտում էր: Հաճախակի կոտրվում էր ակնոցը, և նա ստիպված էր լինում ժպտալ նաև առանց ակնոցի: Ամեն մի ժպիտը նրան ձախորդություն էր բերում, և կոտրվում էր ակնոցը: Ընդհանրապես էր նա ձախորդ: Դասը պատրաստած էր լինում՝ չէին հարցնում: Պատրաստած չէր լինում՝ հարցնում էին: Ուրիշները դասի ժամանակ չարություն էին անում, ինքն էր նկատողություն ստանում. ժպտում էր: «2» էր ստանում, ժպտում էր: ժպտալիս էլ կնճռոտում էր փոքրիկ քիթը, այն քիթը, որին նախանձով էին նայում սիրուն քիթ չունեցողները: Նրան նախանձում էին նաև այն բանի համար, որ աշխարհագրություն լավ գիտեր ու աշխարհագրության դասատուի սիրելին էր...

Բայց ամենից շատ նրան նախանձում էր դասարանի ամենաուժեղ տղան, որը ճնշում էր ամենաթույլին, ու ոչ ոք չէր խառնվում, բացի մեր ժպտացող հերոսից: Բայց պատահում էր նաև, որ նա չէր ժըպտում: Դա լինում էր հենց այն պահերին, երբ ամենաուժեղը փորձում էր ճնշել իրենից թույլին:

Մի անգամ դասամիջոցին ամենաուժեղը նորից հրամայեց ամենաթույլին.

— Գնա ջո՜ւր բեր ինձ համար:

— Ի՜նքդ գնա խմիր:

Ուժեղը ոտքի ելավ. մեր հերոսը դարձյալ չդիմացավ, միջամտեց, բայց այնպես, որ այս անգամ ակնոցից բացի, կոտրվեց նաև պատուհանի ապակին: Նա հո չէ՞ր ուզում կոտրել պատուհանի ապակին. ուղղակի երկուսով՝ ինքն ու ամենաուժեղը, դիպան պատուհանին, ապակին կոտրվեց, և նորից՝ ծնո՜ղ: Խե՜ղճ ծնող. առանց այն էլ նրանք իրենց ձախորդ տղայի պատճառով ամեն շաբաթ ակնոց էին գնում: Այս անգամ նրան արդեն հաստատ կհեռացնեին դըպրոցից, եթե աշխարհագրության դասատուն չմիջամըտեր: Նորից՝ խիստ նկատողություն վերջին նախազգուշացումով, և գանձեցին պատուհանի ապակու արժեքը:

Եվ այսպես՝ ձախորդություն ձախորդության ետեվից: Հաջողակ էր միայն աշխարհագրության մեջ, դրա համար էլ աշխարհագրության դասատուն նրա անունը դրել էր Աշխարհագետ:

— Ապա՜, Աշխարհագե՜տ, մոտեցիր քարտեզի՜ն,՝ թվի՜ր ու ցո՜ւյց տուր մեր հողագնդի մայրաքաղաքները:

Աշխարհագետը վերցնում էր փայտը, մոտենում քարտեզին.

— Մոսկվա, Փարիզ, Լոնդոն, Վաշինգտոն և այլն, և այլն...

— Կեցցե՜ս,— հայտարարում էր դասատուն ու դասամատյանում «5» էր նշանակում:

Բայց մի անգամ Աշխարհագետը աշխարհագրության դասին էլ ձախորդության հանդիպեց: Դասը լսողներ էին եկել: Դասատուն որոշեց նրան կանչել քարտեզի մոտ, որպես ամենաուժեղի: Նա վեր կացավ տեղից, բայց այդ օրը ոչինչ չկարողացավ պատմել աշխարհի մասին. միայն երբեմներբեմն շփոթված նայում էր Նունիկի կողմն ու ժպտում էր մինիստրությունից ժամանած հյուրերին: Հյուրերն էլ սկսեցին նայել Նունիկին ու ժպտալ: Նունիկը դասարանի ամենահպարտ ու ամենախիստ աղջիկն էր. չէր ժպտում: Մինչդեռ դասատուն բարկությունից ու զարմանքից չգիտեր ինչ անի. ուզեց «1» նշանակել դասամատյանում, բայց հետո նշանակեց «2», ասելով.

— Չգիտեմ, Աշխարհագե՜տ, ի՞նչ է կատարվում քեզ հետ...— Հետո քմծիծաղ տվեց. երևի այն բանի համար, որ ասածը հանգավոր ստացվեց:

Հյուրերն էլ քմծիծաղ տվեցին: Քմծիծաղ տվեց նաև դասարանի ուժեղ տղան. սրա քմծիծաղը խորհըրդավոր էր ու չարախինդ...

Դասարանը լուռ էր. բոլորն էլ շատ լավ գիտեին իրենց դասատուին, և ոչ ոք այդ օրը քարտեզին մոտենալ չէր ուզում: Բայց երբ զանգը հնչեց, բոլորն աշխուժացան, ու սկսվեց իսկական ծաղր ու ծանակը: Ամենաակտիվը ամենաուժեղն էր, որ բերանը բաց արեց ու ասաց.

— Ես գիտեմ, թե ինչ է կատարվում Աշխարհագետի հետ...

Դասարանի ամենահետաքրքրասեր աղջկա բերանն էլ բացվեց.

— Ի՞նչ:

Ուժեղ տղան բացատրեց, և դասարանի մնացած հետաքրքրասեր աղջիկների ու տղաների բերաններն էլ բացվեցին...

Աշխարհագետը ժպտում էր իր ախոյանին ակնոցի տակից: Եթե երկյուղ չկրեր մի նոր ձախորդության հանդիպելուց, նա բոլոր սուտ ուժեղների բերանները կարող էր փակել, բայց...

— Ինչո՞ւ դու էլ ուժդ չես գործադրում,— հարցրեց Աշխարհագետին ամենաթույլ տղան, նա, որի պատճառով միշտ կոտրվում էր մեր հերոսի ակնոցի ապակին:

— Չեմ կարող,— ասաց Աշխարհագետը:

— Բա ինչո՞ւ է նա կարողանում:

— Նա ուրիշ բնավորություն ունի, ես՝ ուրիշ,— պատասխանեց մեր հերոսն ու հանկարծ տխրեց:

Ամենաթույլ տղան էլ տխրեց: Ավելի ճիշտը, ոչ թե տխրեց, այլ ավելի տխրեց, որովհետև նա միշտ էլ տխուր էր, ուժեղները թույլ չէին տալիս, որ նա ուրախանա...

Տխրեց-տխրեց, հետո հանկարծ գոռալով դարձավ ու ասաց ամենաուժեղի երեսին.

— Ինչո՞ւ ես դու այդքան չար:

Եվ բանն այնտեղ հասավ, որ Աշխարհագետն ստիպված նորից խառնվեց... Հետո նրանք վայր ընկան, ու այս անգամ ակնոցի ապակուց բացի, կոտրվեց ոչ թե պատուհանի ապակին, այլ՝ մեր ձախորդ հերոսի քիթը:

Դասարանը լռջացավ, ամենից շատ՝ Նունիկը:

Աղջիկներն իսկույն վազեցին միջանցք, ջուր բերեցին, և Նունիկն իր թաշկինակով մաքրեց հերոսի քթի արյունը: Հերոսն էլ հաճույքից ժպտում էր, չնայած քթից արյուն էր հոսում...

Դասարանը լցվեց լայն ժպիտներով: Նունիկն էլ էր ժպտում...

Իսկ Աշխարհագետը, չնայած առանց ակնոցի, բայց արդեն մոռացած իր ակնոցն ու ջարդված քիթը՝ ժպտում էր բոլորից լայն, որովհետև նա ուրիշ տեսակ բնավորություն ուներ: Շատ լավ գիտեր, որ իրենից ավելի թույլին ծաղրելը կամ մարդու ձախորդության վրա ծիծաղելը գեղեցիկ բան չէր: Գեղեցիկ բաներ շատ կան աշխարհում: Ա՛յ, օրինակ, գեղեցիկ բան է ժպտալը:

Եվ ժպտում էր:

Երկու հոգի միայն չէին ժպտում. ամենաուժեղն ու ամենաթույլը: Առաջինը չէր ժպտում, որովհետև սովորություն չուներ ժպտալ, երբ իրեն էին ծաղրում: Իսկ մյուսը՝ ամենաթույլ տղան, մելամաղձոտ հայացքը հառել էր Աշխարհագետին ու նորից մտածում էր... «Պե՞տք է լինել այդքա՞ն ներողամիտ ու բարեհոգի»...









# ԷՌՆՍՏ ՍԵՏՈՆ-ԹՈՄՓՍՈՆ

## (1860—1946)

Անգլիայի հյուսիսում գտնվող ծովափնյա Սաուս-Շիլդս քաղաքում է ծնվել կանադացի նշանավոր գրող և նկարիչ Էռնստ Սետոն-Թոմփսոնը: Ընտանեկան ավանդության համաձայն, այս ընտանիքի բոլոր տղամարդիկ դառնում էին ծովագնաց: Բայց հազիվ էր լրացել Էռնստի վեց տարին, երբ հայրը տեղափոխվեց Կանադա և որոշեց զբաղվել հողագործությամբ: Անծայրածիր պրերիաները, կուսական անտառները և կենդանական աշխարհը հմայեցին փոքրիկ Էռնըստին, և այդ հմայքը մինչև կյանքի վերջը ուղեկցեց նրան: Դպրոցում սովորելիս Սետոն-Թոմփսոնը վճռում է կենդանաբան դառնալ և ուսումնասիրել Կանադայի բոլոր գազաններին ու թռչուններին: Սակայն հայրը տեսնելով նրա նկարները, խորհուրդ է տալիս նկարչական կրթություն ստանալ: Սետոն-Թոմփսոնը մեկնում է Լոնդոն և ընդունվում Թագավորական ակադեմիային կից նկարչական դըպրոցը, իսկ հետո ուսումը շարունակում է Փարիզում, որտեղ էլ մասնակցում է ցուցահանդեսներին: Նա դառնում է անիմալիստ նկարիչ, այսինքն՝ նկարում է միայն կենդանիներ: Վերադառնալով հայրենիք, Սետոն-Թոմփսոնը զբաղվում է որսորդությամբ, շրջագայում ողջ երկիրը՝ ավելի հարստացնելով իր գիտելիքները հայրենի բնության վերաբերյալ: Այն ժամանակ էլ նրա մեջ ցանկություն է առաջանում իր տպավորությունները հաղորդել ընթերցողներին, ծանոթացնել գազանների ու թռչունների հետ, որպեսզի սիրեն նրանց ու պաշտպանեն: Առաջին գիրքը՝

«Ինձ հայտնի վայրի գազանները» հռչակում է Սետոն-Թոմփսոնի անունը: Հետագայում նա հրատարակում է «Հալածականների կյանքը», «Հերոս կենդանիներ», «Փոքրիկ վայրենիների կյանքը», «Ռոլֆը անտառներում» և այլ գրքեր, որոնց նկարազարդումները կատարում է ինքը: Նա գրում է նաև գիտական մի արժեքավոր, չորս հատորանոց աշխատություն. «Վայրի գազանների կյանքը»: Սակայն Սետոն-Թամփսոնի անունը առավելապես հայտնի է որպես գրող, և մինչև այժմ էլ նա համարվում է աշխարհի լավագույն մանկագիրներից մեկը:

Սետոն-Թոմփսոնի պատմվածքները հայերեն թարգմանվել են դեռևս մեր դարի սկզբներին: «Հասկեր» մանկական պատկերազարդ հանդեսի 1910—18 թվերին հրատարակած «Նվեր մանուկներին» մատենաշարով լույս են տեսել նրա չորս գրքույկները՝ «Կախականջիկը», «Թնավորը», «Կաղլիկ քոթոթը» և «Վինիպեգի գայլը»: Բայց Սետոն-Թոմփսոնի ստեղծագործությունները հայերեն ավելի շատ տպագրվել են 30-ական թվականներին: Թարգմանություններ են կատարել Խնկո Ապերը, Ստ. Լիսիցյանը, Սիմակը: Ստորև տպագրում ենք հատվածներ նրա «Բինգո» պատմվածքից Լիլի Տեր-Մինասյանի թարգմանությամբ:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

*Ես մի քոթոթ գնեցի, անունը դրի Բինգո: Ձմեռը նա անցկացրեց մեր խրճիթում, ապրելով գեր ու ծույլ, բարեսիրտ ու անդաստիարակ քոթոթի կյանքով: Նա լափում էր ագահաբար և օր-օրի դառնում ավելի մեծ ու դժվարաշարժ: Նույնիսկ տխուր փորձը չսովորեցրեց նրան, որ իր քիթը կատվից հեռու պահի: Կատվի հետ մտերմանալու նրա ամենաբարեկամական փորձերը կատվին անհասկանալի մնացին, և արդյունքը եղավ զինված չեզոքությունը, որ մերթ ընդ մերթ հանգեցնում էր պատերազմի: Վերջապես Բինգոն, որ շատ վաղ հայտնաբերեց իր ինքնուրույնությունը, վճռեց բոլորովին խուսափել խրճիթից և գիշերել մարագում:*

*Գարնանը ես լրջորեն զբաղվեցի նրա դաստիարակությամբ: Շատ ջանք թափեցի, իսկ Բինգոն շատ չարչարանք կրեց, և այնուամենայնիվ սովորեց հրամանով գնալ ու գտնել մեր պառավ կովին, որն ազատ արածում էր դաշտում:*

*Վերջապես հասկանալով, թե ինչ է պահանջվում իրենից, նա սիրեց այդ գործը, և ոչ մի բան նրան այնպես դուր չէր գալիս, ինչպես գնալու և կովին տուն բերելու հրամանը: Նա ուրախ հաչոցով ու բարձր ոստոստալով սլանում էր դեպի դաշտ, որպեսզի տեսնի, թե որտեղ է արածում իր զոհը: Եվ քիչ հետո ետ էր վերադառնում, իր առջևից քառատրոփ քշելով կովին և նրան հանգիստ էր թողնում միայն այն ժամանակ, երբ խեղճ կովը հևալով ու փնչալով թաքնվում էր գոմի ամենահեռավոր անկյունում:*

*Իհարկե, եթե նա այդ գործի վրա ավելի պակաս եռանդ ծախսեր, մենք նրան չէինք խանգարի, բայց նա այնքան մոլեգին սիրեց այդ ամենօրյա որսը, որ սկսեց դեպի տուն քշել մեր պառավ Դոննիին, նույնիսկ առանց մեր հրամանի: Վերջ ի վերջո այդ ջանասեր հովիվը սկսեց կովին դեպի գոմը քշել ոչ թե օրական մեկ կամ երկու, այլ քսան անգամ: Բանն այնտեղ հասավ, որ հենց նա վազվզելու ցանկություն էր ունենում կամ մի քանի ազատ րոպե, կամ հենց այդպիսի միտք էր ծագում նրա գլխում, գլխապատառ վազում էր դաշտ և մի քանի րոպեից վերադառնում, իր առջևից վազքով քշելով մեր խեղճ կովին:*

*Սկզբում դա այնքան էլ վատ չէր թվում, որովհետև այդպիսով կովը չէր կարող տանից շատ հեռանալ: Բայց շուտով ստիպված եղանք համոզվել, որ կովը կիսաքաղց է մնում: Նա նիհարեց և սկսեց ավելի քիչ կաթ տալ: Ըստ երևույթին, այդ վատ էր անդրադառնում նաև նրա հոգեվիճակի վրա, քանի որ նա անհանգստությամբ շուրջը նայելով, շարունակ տագնապով սպասում էր շան երևալուն: Իսկ առավոտները նա գոմից չէր հեռանում, կարծես վախենում էր դաշտ գնալ, որպեսզի չենթարկվի նոր հարձակման:*

*Սա արդեն չափազանց էր: Մեր բոլոր ջանքերը՝ ստիպել Բինգոյին ավելի չափավոր լինել իր այս զվարճության մեջ, հաջողության չհասան և ստիպված եղանք ի վերջո բռնի ուժով վերջ դնել այդ խաղին: Բինգոն այլևս չէր համարձակվում կովին տուն քշել, բայց շարունակում էր պահպանել նրա նկատ-*

մամբ մեծ հետաքրքրություն և կծիկ դարձած պառկում էր գոմի դռանը, երբ կովին կթում էին:

Ամռանը մլակներն սկսեցին թունավորել մեր կյանքը: Բայց ավելի անտանելի էր, երբ կթելու ժամանակ կովը, մլակներից ազատվելու համար, թափահարում էր պոչը:

Իմ եղբայր Ֆրեդը, որ նույնքան հնարամիտ էր, որքան և անհամբեր, մի հասարակ միջոց գտավ ստիպելու կովին դադարեցնել պոչի թափահարումները: Նա կովի պոչին մի աղյուս կապեց ու անխռով սկսեց իր գործը, համոզված, որ կովն այլևս չի խանգարի իրեն: Բայց մենք բոլորս որոշ թերահավատությամբ վերաբերվեցինք այդ փորձին:

Եվ ահա, հանկարծ, մլակների ամպի միջով մեզ հասավ բութ հարվածի ձայն և հայհոյանքների մի տարափ: Կովը շարունակում էր հանգիստ որոճալ, իսկ Ֆրեդը վրա էր թռել և կատաղած ուզում էր կովին խփել աթոռակով: Եվ ինչպես չկատաղեր, պառավ հիմար կովը աղյուսով խփել էր նրա ականջին: Իսկ ներկաների չարախնդությունը, ծաղր ու ծանակը նրան վերջնականապես դուրս էին բերել իրենից:

Բինգոն, աղմուկ լսելով և ենթադրելով, որ իր ներկայությունն անհրաժեշտ է, կովի վրա հարձակվեց մյուս կողմից: Մինչ նորից կարգ ու կանոն կհաստատվեր, կաթը թափվեց, աթոռակն ու դույլը կոտրվեցին, իսկ կովն ու շունը խիստ ծեծ կերան:

Խեղճ Բինգոն ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, թե ինքն ինչ մեղք է գործել: Նա վաղուց արդեն սովորել էր արհամարհել այդ կովին և հիմա, վերջնականապես զայրացած, վճռել էր նույնիսկ չմոտենալ նրա գոմի դռան կողմը և փոխադրվեց ախոռ՝ ձիերի մոտ:

Կովն իմն էր, իսկ ձիերը եղբորս էին պատկանում, և, գոմը ախոռի հետ փոխելով, Բինգոն կարծես հրաժարվում էր նաև ինձնից: Մեր ամենօրյա ընկերական շփումը դադարեց, և այնուամենայնիվ, եթե որևէ լուրջ բան էր պատահում, Բինգոն միշտ դիմում էր ինձ, ոչ թե եղբորս: Եվ մենք երկուսս էլ կարծես զգում էինք, որ մարդու և շան միջև եղած կապը կարող է դադարել միայն նրանց կյանքի հետ:

Բինգոյին մի անգամ ևս վիճակվեց հանդես գալ հովվի դերում: Դա նույն թվի աշնանն էր, տոնավաճառում: Այնտեղ տեղի էր ունենում շների մրցում և այն շունը, որը բոլորից լավ կքշեր կովին այնտեղ, ուր նրան կհրամայվեր, պետք է ստանար մրցանակ և երկու դոլար:

Մի խարդախ ընկերոջ դրդմամբ, ես Բինգոյին ցուցակագրեցի մրցմանը մասնակցելու համար, և նշանակված օրը վաղ առավոտյան կովին գյուղի մոտի դաշտն արեցի: Երբ մրցումն սկսվեց, ես մատնացույց անելով կովին, Բինգոյին ասացի.

— Գնա բե՛ր:

Ինքնըստինքյան հասկանալի է, որ ես ուզում էի, որ Բինգոն կովին բերի ինձ մոտ, այնտեղ, ուր նստած էին դատավորները:

Բայց կենդանիները մեզնից լավ գիտեին, թե ինչ անեն: Իզուր չէր, որ նրանք ողջ ամառը փորձում էին իրենց դերերը: Երբ Դոննին տեսավ ամբողջ շնչով դեպի իրեն սլացող Բինգոյին, հասկացավ, որ իր միակ փրկությունը իր գոմն է, իսկ Բինգոն համոզված էր նույնպես, որ իր կյանքի միակ նպատակը դեպի գոմը սլացող կովի վազքը արագացնելն է: Եվ ահա նրանք սլացան դաշտի միջով մեկը մյուսի հետևից, ինչպես գայլ ու եղնիկ, բռնած երկու մղոն հեռավորության վրա գտնվող գոմի ճամփան և շուտով չքվեցին տեսադաշտից:

Դատավորներն այլևս չտեսան ո՛չ կովին, ո՛չ էլ շանը: Պարգևն ստացավ մի ուրիշ շուն, որը Բինգոյի միակ մրցակիցն էր:

Բինգոն զարմանալիորեն հավատարիմ էր ձիերին: Ցերեկը վազում էր նրանց հետ կողք-կողքի, իսկ գիշերները քնում էր ախոռի դարբասի մոտ: Ոչինչ չէր կարող նրան բաժանել ձիերից:

Ես նախապաշարված մարդ չեմ և չէի հավատում նախանշաններին, բայց այստեղ ինձ վրա խոր տպավորություն թողեց մի տարօրինակ դեպք, որի գլխավոր դերը Բինգոյին է պատկանում:

Ես և եղբայրս երկուսով ապրում էինք մի ֆերմայում: Մի օր առավոտյան եղբայրս գնաց ճահճառվակի մոտից խոտ բերելու: Ճահճառվակը բավական հեռու էր գտնվում, այդ պատճառով էլ նա շատ վաղ ճամփա ընկավ: Որքան էլ որ դա տարօրինակ թվա, Բինգոն այս անգամ չուզեց ընկերակցել ձիերին: Եղբայրս կանչում էր նրան, բայց Բինգոն տեղից չշարժվեց, մնաց հեռու կանգնած ու միայն աչքի պոչով նայում էր ձիերին: Հանկարծ նա քիթը տնկեց քամու ուղղությամբ և մի երկար ու ծիգ թախծալի ոռնոց արձակեց: Նա հայացքով հետևում էր սայլին, մինչև այն անհետացավ աչքից, նա նույնիսկ մի քիչ քայլեց նրա ետևից, ժամանակ առ ժամանակ մռլտալով ամենատխուր ձայնով: Այդ ամբողջ օրը նա կամովին անցկացրեց ձիերից հեռու, մնաց ֆերմայի բակում, մերթ ընդ մերթ ողբալի ոռնոցներ արձակելով: Ես մենակ էի մնացել ֆերմայում, և շան այդպիսի տարօրինակ վարքը ինձ վրա ճնշող տպավորություն էր թողնում՝ առաջ բերելով փորձանքի նախազգացում, որ գնալով ուժեղանում էր:

Ժամը վեցի մոտ Բինգոյի ոռնոցը անտանելի դարձավ, և ես, չկարողանալով լավ ելք գտնել, սկսեցի ձեռքիս տակ ընկած իրը նետել նրա վրա, մինչև վռնդեցի հեռու: Բայց սարսափը պատեց ինձ: Ես նախատում էի ինձ, որ եղբորս մենակ թողեցի: Արդյոք կտեսնե՞մ նրան նորից ողջ և առողջ: Ես շան վար-

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## ԳՈՒՋԱՆՆԵՐԻ՛Ն ՀԱՇՏԵՑՐԻ՛Ն

Մեջք-մեջքի տված լեռների ստորոտում անդնդախոր ձորեր են, կիրճեր, և այդ կիրճ-ձորերից մեկում տեղավորված է Ղափանի № 27 սանատորատիպ միջնակարգ գիշերօթիկ դպրոցը:

Երբ շենքը շահագործման հանձնեցին, շրջապատն ամայի էր: Դպրոցի առաջին սաները որոշեցին օգտվել բարենպաստ կլիմայից և խնձորի, բալի ու կեռասի տնկիներ աճեցրին այդ ազատ տարածություններում: Մի երկու տարի անց, առատ բերք ստացան: Հաջորդ տարի մշակեցին դպրոցի ետևի ութ հեկտարանոց ազատ հողամասը ևս: Պատանի հողագործներին լավ վարձատրեց հողը: Յուրաքանչյուր տարի տնտեսությունից մոտ տասը հազար ռուբլու եկամուտ էին ստանում: Ստացած գումարի մի մասով էքսկուրսիաներ էին կազմակերպում՝ Մոսկվա, Կիև, Լենինգրադ ու Հայաստանի տարբեր քաղաքներ, մի մասով էլ թռչնաբուծական, խոզաբուծական ֆերմաներ ստեղծեցին: Հիմա նրանց տնտեսությունն ունի վաթսուն խոզ և 200 հավ:

Դպրոցականների կատարած աշխատանքը շրջանում մեծ արձագանք գտավ, նույնիսկ պաշտոնապես պլան իջեցվեց նրանց տնտեսության համար: Նորությունը և՛ ուրախալի էր, և՛ պարտավորեցնող:

Նախատեսնված 18.000 ռուբլու արտադրանք տալու պլանը կատարեցին և գերակատարեցին, ընդարձակելով տնտեսությունը՝ ջերմոց կառուցեցին: Ջերմոցային տնտեսությունը ամբողջ ձմռան ընթացքում ապահովում է նրանց թարմ բանջարեղենով:

Երբ մեկնարկ վերցրեց համամիութենական «Միշտ պատրաստ» երթը, նրանք բոլոր երթուղիների ուղղությամբ աշխատանքներ ձեռնարկեցին: Ի թիվս այլ գործերի, որոշեցին տարվա բոլոր եղանակներին գործող լողավազան կառուցել: Եկան շինարարները: Դպրոցի արտադրական բրիգադները, բնասերները, գրական ու մյուս խմբակների անդամները ազատ ժամերը տրամադրում էին լողավազանի շինարարությանը: Կարճ ժամանակում լողավազանը կառուցվեց, ապահովվեց տաք ու սառը ջրով: Դպրոցականներն այժմ մեթոդիստի են սպասում, որ այդքան գնեցիկ լողավազանից կարողանան օգտվել:

Այս տարի դպրոցականները նորից առաջնությունը տվեցին «Պիոներ-կառույց» երթուղուն: Գարնանը գնեցին մի քանի նագար, ու չորս ամիս անց, փոքրիկ կրծողների թիվը հասավ հիսունի: Երեխաները նրանց համար վանդակներ են պատրաստել, ամեն օր հոգատարությամբ խնամում են:

Դպրոցն ունի նաև իր գազանանոցը: Ճիշտ է, այն առայժմ փոքր է, սակայն այնտեղ կան իսկական արջեր, վայրի բադեր ու այլ թռչուններ: Իսկ սովորական շունը գազանանոցի բնակիչ է դարձել երկու տարի առաջ. որսորդները երեխաներին արջ էին նվիրել, արջը նեղվում, ձանձրանում ու տխրում էր մենակությունից, նույնիսկ «հացադուլ» էր հայտարարել: Դիրեկտորի տեղակալ Հենրիկ Հայրապետյանը խորհուրդ տվեց մինչև նոր արջ բռնելը մի շուն բերել նրան ընկեր:

— Առաջին օրերին արջին տեսնելիս՝ շունը գետինը ճանկռելով ետ-ետ էր փախչում, բայց տարբեր հնարանքներով երեխաները կարողացան ընտելացնել նրանց,— պատմում է ավագ ջոկատավար ընկեր Լուսիկը,— երբ երկրորդ արջն էլ բերեցին, շանը հանեցինք վանդակից, բայց նա չէր հեռանում արջերից և ոչ էլ արջերն էին ուզում բաժանվել նրանից:

Այժմ նրանք հաշտ ու խաղաղ ապրում են միևնույն վանդակում: Ճիշտ է, բրդոտների կատակները երբեմն արջավարի է ստացվում, բայց դե, շունը սովորել է դրան և մեծ մասամբ ինքն է առիթ տալիս:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

---

*քից պետք է հասկանայի, որ սարսափելի բան է տեղի ունենալու...*

*Վերջապես եկավ եղբորս գալու ժամանակը և ես շուտով տեսա իմ Ջոնին, խոտով լի սայլի վրա նըստած: Զիերին արձակելով, ես ձևական անտարբերությամբ հարցրի եղբորս.*

*— Հը՞, ինչպե՞ս էր: Ամեն բան լա՞վ անցավ:*

*— Շատ լավ,— պատասխանեց եղբայրս:*

*Դրանից հետո կարելի՞ է արդյոք հավատալ նախանշաններին:*

*Մինչդեռ, երբ շատ ժամանակ անց ես պատմեցի այդ մասին մի մարդու, նա ուրբ հայացքով նայեց ինձ և հարցրեց.*

*— Բինգոն ձեզ երբեք չի՞ լքել վտանգի ժամանակ:*

*— Երբեք:*

*— Երբեմն մի՛ ծիծաղեք դրա վրա: Այդ օրը ոչ թե ձեր եղբորը, այլ ձեզ էր վտանգ սպառնում, Բինգոն մնացել է ձեզ հետ և փրկել ձեր կյանքը, թեև դուք երբեք չեք իմանա, թե ինչպես:*




# ՄԱԳՆԻՍ

## ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՁԳՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՆԵԼՈՒԿԸ

Երբ 5-ամյա Էյնշտեյնն առաջին անգամ տեսավ կողմնացույցը, շատ զարմացավ, որ նրա սլաքը միշտ թեքվում է դեպի հյուսիս: Մանուկ Էյնշտեյնի համար այդ երևույթը անհամատեղելի էր բոլոր այն երևույթների հետ, որոնք արդեն տեղ էին գտել նրա ներաշխարհում: Ի՞նչը կարող է լինել սլաքի դեպի հյուսիս թեքվելու պատճառը: Ուրեմն սլաքը ձգվում է ինչ-որ՝ անհայտ ուժի՞ց: Իսկ ո՞րն է այդ ուժը: Մի՞թե այն կարող է ազդել ինչ-որ հեռավորությունից:

Մագնիսական ձգողության գաղտնիքները միայն Էյնշտեյնին չէ, որ զարմացրել են, դրանցով մանուկ հասակում հմայվել ու կախարդվել են գրեթե բոլորը, իսկ հետո, գնալով, ինչպես մյուս հանելուկային երևույթների, այնպես էլ մագնիսի հատկությունները, մարդկանց մեծ մասի համար դարձել են սովորական. «Զարմանալու ինչ կա, մագնիս է՝ ձգում է...» Բարեբախտաբար լինում են մարդիկ, որ չեն կորցնում մանկության օրերի զարմանքը: Նրանք զարմանում են այնքան ժամանակ, մինչև որ իրենց համար պարզ են դառնում իրերի և երևույթների հետևում թաքնված գաղտնիքները: Դրանք գիտնականներն են:

Մագնիսական ձգողությունը երևի այն եզակի երևույթներից է, որ մինչև այսօր էլ շարունակում է գիտնականներից խնամքով թաքցնել իր գաղտնիքներից շատերը: Այդ գաղտնիքների բացահայտման առաջին ամենալուրջ քայլը Մարիկուրտցի Պիեռ Պերեհրինինն է: Նա 1269-ին իր «Նամակներ մագնիսի մասին» գրքում ի մի բերեց ոչ միայն մագնիսի մասին մարդկության մինչ այդ հայտնի տվյալները, այլև երևան հանեց մի շարք նոր և կարևոր հատկություններ: Պերեհրինը հաստատեց, որ մագնիսներն ունեն երկու տարբեր բևեռներ (հարավային և հյուսիսային): Ընդ որում նույնանուն բևեռներն իրար վանում են, տարանունները՝ ձգում: Նա փորձով համոզվեց, որ երկաթը բնական մագնիսով շփելիս մագնիսանում է, դառնում արհեստական մագնիս: Գտավ, որ մագնիսական ուժերը թափանցում են ջրի և ապակու միջով: Ինչպես նա, այնպես էլ իր հետևորդները, փորձեցին բացատրել մագնիսական ձգողության երևույթը, բայց դա նրանց չհաջողվեց:

Այդ բնագավառի ամենալուրջ քայլը թերևս կատարեց Վիլյամ Հիլբերտը: Նա 18 տարի շարունակաբար կատարած իր փորձերի արդյունքները շարադրեց «Մագնիսի, մագնիսական մարմինների և մեծ մագնիսի՝ երկրագնդի մասին» գրքում, որը լույս տեսավ 1600 թվականին: Հիլբերտը պատահական փորձեր չէր անում. նախօրոք որոշում էր իր նպատակը և անցնում գործի: Առաջին հերթին նրան հետաքրքրում էր կողմնացույցի սլաքի շեղումը: Դա խոսում էր այն մասին, որ երկրագունդը ունի իր սեփական մագնիսական բևեռները: Հիլբերտը չսխալվեց: Նա մագնիսից պատրաստեց երկրատիպ փոքրիկ մի գունդ և անմիջապես նկատեց, որ այդ գունդը իր մագնիսական հատկություններով հիշեցնում է երկրագունդը: Պարզվեց, որ ինչպես բոլոր մագնիսները, այդ գունդն էլ ունի իր երկու տարանուն բևեռները, ընդ որում կողմնացույցը այդ գնդի վրա պահում էր իրեն այնպես, ինչպես երկրագնդի վրա: Ուրեմն երկրագունդը նույնպես «մագնիսական գունդ է», եզրակացրեց Հիլբերտը: Այնպես որ կողմնացույցի սլաքի խոտորումը արդարացվեց: Փաստորեն Հիլբերտը առաջինը հերքեց այն թյուր կարծիքը, որ կողմնացույցի սլաքը թեքվում է դեպի հյուսիս, քանի որ ձգվում է բևեռային աստղերի կողմից: Հիլբերտը հերքեց նաև այն տարածված կարծիքը, որ իբր ալմաստը ազդում է մագնիսի մագնիսական հատկությունների վրա: Նա հավաքեց 17 մեծ ալմաստներ և վկաների ներկայությամբ ցույց տվեց, որ նրանք չեն կարող փոփոխել մագնիսի մագնիսական հատկությունները: Նա գտավ, որ որոշակի ջերմությունից բարձր ջերմաստիճաններում մագնիսը կորցնում է իր հատկությունները: Վերջերս այդ ջերմաստիճանը (588°) ի պատիվ ֆրանսիացի ֆիզիկոս Պիեռ Կյուրիի, կոչվեց Կյուրիի կետ: Հիլբերտը հայտնաբերեց շատ տարօրինակ մի հատկություն. նա նկատեց, որ երկաթի կտորը դեպի մագնիսի բևեռներից մեկը շարժելու դեպքում, ավելի հեռու մնացած բևեռը գնալով ավելի մեծ ուժով է դիմադրում շարժմանը: Փափուկ երկաթից պատրաստված իրերը երկար ժամանակ անշարժ թողնելու դեպքում մագնիսանում են, ընդ որում մագնիսացման պրոցեսը ավելի արագացնելու համար կարելի է իրին հարվածել մուրճով: Թված բոլոր հայտնագործությունները անմիջական փորձից բխող հետևություններ էին: Իսկ այն, որ մագնիսի ազ-

Սկիզբը՝ № 2-ում:

դեցությունը տարածվում է լույսի արագությանը հավասար արագությամբ, դա արդեն Հիլբերտի հանճարեղ կռահումն էր, կռահում, որը որոշակի իմաստ ստացավ միայն էլեկտրամագնիսական ալիքների մանրազնին ուսումնասիրությունից հետո:

Ի՛վերջո Հիլբերտի դեմ ծառացավ հարցերի հարցը: Ինչո՞ւ է մագնիսը ձգում, ի՞նչն է տալիս նրան այդ հնարավորությունը: Հետևեց նաև պատասխանը՝ ամեն ինչի պատճառը մագնիսի սիրտն է: Իհարկե, մեր օրերում նման պատասխանը տարօրինակ է հնչում. ի՞նչ սրտի մասին է խոսքը, մի՞թե մագնիսը սիրտ ունի: Մի՞թե սա բանաստեղծական զեղում չէ: Բնավ երբեք. մեծ գիտնականի օրոք դեռևս անհայտ էր մագնիսական դաշտի գաղափարը: Այնպես որ, երբ Հիլբերտը ասում է սիրտ, պետք է հասկանալ դաշտ:

Միայն այսքանը: Ձգողականության մասին եղածի վրա Հիլբերտը ոչինչ չավելացրեց: Եվ ի՞նչ կարող էր ավելացնել միջնադարի գիտնականը, երբ մինչև այսօր էլ, նույնիսկ քվանտային ֆիզիկայի տեսանկյունից, մագնիսական ձգողությունն առավելապես մնում է հանելուկային երևույթ: Այս վերջին հանգամանքը, իհարկե, երբեք չխանգարեց մագնիսի կիրառությանը: Իսկ նրա կիրառությունների ոլորտը շատ լայն է: Այդ մասին՝ ամսագրի հաջորդ համարում:

*(Շարունակելի)*

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ





# ՄԱՐԴԱԿԵՐ ԲՈՒՅՍԵՐ

## ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈ՞ՒՆ, ԹԵ՞ ԱՌԱՍՊԵԼ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Մոտավորապես հիսուն տարի առաջ աշխարհը ցնցվեց սենսացիոն լուրից. «Ջունգլիներում հայտնաբերվել են մարդակեր ծառեր: Դրանք ուղղակի բռնում և խժռում են իրենց զոհերին»: «Ականատեսները» շտապում էին ամենայն մանրամասնությամբ նկարագրել այդ դեպքը...

1955 թվականին նման հաղորդումներ երևացին նաև մեր լրագրերում: «Հրեշավոր ծառը» հոդվածի հեղինակը պատմում էր. «Պայքարը տևեց մի ակնթարթ: Առջևից գնացող մարդը լսեց ուժեղ խշխըշոց, խուլ, հուսահատ ճիչ, և շուռ գալով հասցրեց նկատել, թե ինչպես գեղեցիկ ու խոշոր ծաղիկներով ծառի հսկայական տերևները, որոնք մինչ այդ փռված էին գետնին, դեպի վեր նետվելով շրխկոցով փակվեցին, կլանելով իրենց զոհին»:

Տասը օր հետո, երբ կենդանի մնացած ճանապարհորդը մոտակա գյուղի բնակիչներին առաջնորդեց դեպքի վայրը, մահացու տերևները կրկին պառկած էին գետնի վրա, իսկ մարդուց մնացել էր միայն կմախքը: Սարսափելի ծառը ուղղակի խըժռել էր իր զոհին, որը պատահաբար դիպել էր գետնին դավադրաբար փռված տերևներին: Դա տեղի էր ունեցել մի քանի տարի առաջ, Մադագասկարի քիչ ուսումնասիրված անտառներում: Այստեղ դարեր շարունակ արևից այրված հողերում, որտեղ իշխում է ծանր, խեղդուկ օդը, աճում են «գիգանտ» ծառեր:

Կենսաբան գիտնականները դեռ չէին հասցրել ամբողջովին հերքել մյունխհաուզենյան այս հորինվածքը, երբ պատերազմի տարիներին Բրազիլիայից ստացվեցին նոր ցնցող հաղորդագրություններ: Պարագվայի և Բոլիվիայի միջև գտնվող Գրան-Չակո երկրամասում ինչ-որ մի անծանոթ տեսակի ծառի տակ հաճախ էին հայտնաբերվում մարդկային կմախքներ: Զարմանալին այն էր, որ մեծ մասամբ կմախքները փաթաթված էին լինում անծանոթ ծառի հսկայական լայն տերևներով: Պրոֆեսոր Բլոսսֆելդը, որը մի քանի տարի ապրել է Գրան-Չակոյում, սկսեց ուսումնասիրել այս զարմանալի երևույթը: Նրան հաջողվեց պարզել, որ խոսքը վերաբերվում է ֆիլոդենդրոն բիպինատիֆիդում ծառին, որի տերևները խիստ լայն են և հասնում են մինչև մեկ մետր երկարության: Լուրեր էին տարածվել, որ իբր թե մարդկանց գրավում է այդ զարհուրելի ծառի ծաղիկների հրաշալի բուրմունքը, որը շշմեցնում է նրանց, հարբեցնում, գցում ինքնամոռացության գիրկը: Այնուհետև տերևները փաթաթ-



վում են անօգնական մարդու մարմնին և սկսում ծծել նրա արյունը:

Պրոֆ. Բլոսսֆելդը նկատեց, որ, իսկապես, «մարդակեր» բույսի ծաղիկները չափազանց հոտավետ են և, բացի այդ, ծառը տալիս է խոշոր ու համեղ պտուղներ, որոնք միանգամայն պիտանի են սննդի համար: «Մարդակեր» ծառի ո՛չ ծաղիկներում և ո՛չ էլ պտուղներում պրոֆեսորը թունավոր կամ թմրեցուցիչ նյութեր չհայտնաբերեց:

Սակայն որտեղի՞ց էին հայտնվում մարդկանց դիակները:

Պրոֆ. Բլոսսֆելդը վաղուց էր նկատել, որ «մարդակեր» ծառերը աճում են անապատային վայրերի մոտ գտնվող անտառների եզրերին, որոնց շրջակայքում փռված էին տատասկներով ու կակտուսներով ծածկված դաշտերը: Այդ ծառերը տասնյակ կիլոմետր հեռավորությունից գրավում էին ճանապարհորդների ուշադրությունը և ահա, այս անապատում մոլորված, հուսահատ կերպով ջուր փնտրող մարդիկ հեռվից նկատելով կանաչ պուրակները, այնտեղ էին շտապում ջուր գտնելու հույսով: Վերջին ճիգերը գործադրելով և տեղ հասնելով՝ նրանք ջուր չէին գտնում և մեծ մասամբ հուսահատությունից մեռնում էին, հավերժ մնալով «մարդակեր» ծառերի ստվերում: Իսկապես, կմախքները մեծ մասամբ փաթաթված էին լիանում տերևներով, դրա պատճառն այն է, որ ֆիլոդենդրոնի տերևները անընդհատ աճելով հասնում են գետնին և արգելքի հանդիպելով՝ փաթաթվում նրա շուրջը:

Որ ֆիլոդենդրոն բիպինատիֆիդումը մարդակեր չէ, դրանում երկու կարծիք լինել չի կարող: Պրոֆ. Բլոսսֆելդը իր ուղեկիցների հետ երկար ժամանակ նստել է այդ ծառերի ստվերում, փաթաթվել դրանց տերևներով, քնել այդ վիճակում, ճաշակել դրա պտուղները, հիացել հոտավետ ծաղիկներով և միշտ էլ ողջ ու առողջ տուն վերադարձել:

Չնայած աշխարհի թերթերը շարունակում են նորանոր հաղորդագրություններ տպագրել «մարդակեր» ծառերի մասին, այնուամենայնիվ նման լուրերը միշտ էլ հեշտությամբ կամ դժվարությամբ հերքվում են բուսաբան հետազոտողների ջանքերով: Նման լուրերը միշտ էլ կապվում են միջատակեր բույսերի գոյության փաստի հետ, որը գիտությանը վաղուց է հայտնի: Դրանք երկրագնդի վրա տարածված են չափազանց մեծ չափերով (մոտ 500 տեսակ): Միջատակեր բույսի թակարդը տարբեր կառուցվածք ունի: Կան ճանճորս բույսեր, որոնք ունեն հատուկ հարմարանք միայն մանր միջատներ որսալու համար: Դա ուռուցիկ մակերես է, ծածկված հատուկ գեղձիկավոր մազմզուկներով, որոնք կպչուն նյութ են արտադրում: Երբ միջատը կանգնած է այդ մակերեսների վրա, ապա մազիկները թեքվում են դեպի միջատը և բոլոր կողմերից շրջապատում նրան: Թակարդի մեջ ընկած միջատը հեռանալ չի կարող, քանի որ ոտքերը կպչում են լպրծուն նյութին և նրան գամում բույսին: Այնուհետև ճանճորսը աստիճանաբար մարսում է իր զոհին՝ արտադրվող հատուկ ֆերմենտների օգնությամբ: Միջատի մարմինը լրիվ տարրալուծվելուց հետո միայն բույսը գրավում է իր նախկին վիճակը: Մադագասկարում աճող որոշ միջատակեր գիշատիչ բույսերի տերևի ծայրերը վեր են ածվել կճուճանման օրգանների, որոնց կափարիչը շարժական է: Երբ կափարիչը բացվում է, միջատները շտապում են թափանցել կճուճի ներսը, քանի որ այն լցված է հոտավետ գրավիչ նյութերով: Երբ միջատն արդեն թակարդի ներսում է, կափարիչը անմիջապես փակվում է: Այնուհետև իր. բաղադրությամբ ստամոքսահյութ հիշեցնող նյութի շնորհիվ միջատը լրիվ լուծվում և մարսվում է բույսի կողմից: Կան նաև միջատակեր բույսեր երկփեղկանի թակարդով: Բարեբախտաբար միջատակեր բույսերը իրենց չափերով աննշան են (նրանց բարձրությունը չի անցնում 0,5—1 մետրից) և հետևաբար ոչ մի վտանգ չեն ներկայացնում կենդանիների և հատկապես մարդկանց համար:

Մի շարք առասպելներ վերաբերվում են խիստ մահացու թույներին, որոնք իբրև թե բնիկները ստանում էին տարբեր բույսերից, իրենց նետերը և նիզակները թույնով մշակելու համար: Եվրոպացիները ստիպված էին ծանոթանալու այդ մահաբեր զենքերին բնիկների հետ ընդհարվելու առաջին իսկ օրերից: Մոտ 400 տարի սրանից առաջ եվրոպացիները դեռևս չգիտեին այդ թույների ձեռք բերման և պատրաստման եղանակների մասին: Եվրոպական երկրների կառավարությունները իրենց հետախույզներին ուղարկում էին գաղութային երկրները, նրանց հանձնարարելով պարզել թույների գաղտնիքները: 18-րդ դարում նման հանձնարարություն ստացավ նաև հոլանդացի բուսաբան Ռումֆիյը: Համարյա տասնհինգ տարի նա անցկացրեց Մալայզիայում: Հանձնարարությունը դժվար էր ու վտանգավոր: Առաքելությունը վերջացավ նրանով, որ նա կորցնելով իր գիտական բարեխղճությունը, ներկայացրեց կեղծ զեկուցագիր: Նրա հաղորդման համաձայն, այն ծառի շրջակայքում, որից տեղացիները իբր թե թույն են ստանում, չեն աճում ո՛չ թփեր, ո՛չ ծառեր, ո՛չ էլ անգամ խոտեր ու մամուռներ: Իբրև թե հողը նրանց տակ ամբողջապես սև է, կարծես այրված լինի, որ երբ թռչունները նստում են այդ ծառի ճյուղերին, սատկում են և ցած ընկնում: Այն ամենը, շարունակում է Ռումֆիյը, որ շփվում էր այս ծառի կողմից արձակված գոլորշիների հետ, անմիջապես ոչնչանում էր: Թռչունները խուսափում էին թռչել նման ծառերի սաղարթի վերևով: Գիտնականի այս հորինվածքը այն ժամանակ ընդունվեց որպես բացարձակ ճշմարտություն:

Միշտ նույնանման կեղծ տեղեկություններ և լուրեր «հավաքեցին» և հրատարակեցին մի շարք այլ գիտնականներ, որոնք 18-րդ դարում այցելեցին Մալայզիա: Դրա հետևանքով ծնվեցին մի շարք ֆանտաստիկ պատմություններ՝ բնիկների կողմից ծառերին մատուցված մարդկային զոհաբերությունների մասին, որպեսզի ծառերը ողորմածաբար վերաբերվեին մարդկանց: Պատմվածքներ հորինվեցին հրեշ-ծառերի մասին: Նման առաջին հոդվածը հանդես եկավ 1783 թվականին: Այն գրել էր հոլանդացի բժիշկ Ֆերշը, անգլիական ամսագրի համար: Ֆերշի հիմնական հանցանքը կայանում էր նրանում, որ նա անազնվաբար իրեն համարում էր նման ցրնցող ու անհավանական տեսարանների ականատես: Միայն 1805 թ. ֆրանսիացի բուսաբան Լեշենո դը լա Տուրը, որը աշխատում էր Պոնդիշերիում, մեկ-

նեց ճավա, այդ բույսը անձամբ տեսնելու համար: Նրան հաջողվեց հերքել այդ հորինվածքները և պարզություն մտցնել ստեղծված խառնաշփոթության մեջ:

Ռուս մեծ բանաստեղծ Ա. Ս. Պուշկինի «Անչար» բանաստեղծությունը նույնպես գրված է այս լուրերի ու սխալ պատկերացումների ազդեցության տակ:

Իհարկե, թունավոր ծառեր շատ կան և դրանք խիստ վտանգավոր են մարդկանց ու կենդանիների համար: Սակայն թունավորվելու համար պետք է ուտել դրանց պտուղները, տերևները, սերմերը, կեղևը և այլն: Ճիշտ է, կան նաև ծառեր, որոնց ձեռք տալ անգամ չի կարելի: Եթե մարդու ձեռքի վրա թեկուզ մանր, աննշմարելի վերքեր ու ճեղքվածքներ կան, ապա թույնը կանցնի օրգանիզմի մեջ և հիվանդագին երևույթներ կառաջանան, որոնք հաճախ ավարտվում են մահով: Հայաստանի գիտությունների ակադեմիայի բուսաբանական այգում այդպիսի մի թփատեսակ կա. այն կոչվում է **ռուս տոքսիկոդենդրոն**: Երբ այցելուները կամ այգու բանվորները անզգուշաբար ձեռք են տալիս դր[illegible] տերևներին կամ ցողունին, ապա հեշտությամբ թունավորվում են: Թունավորվածի ձեռքը սարսափելի ուռչում է և անտանելի ցավեր են առաջանում: Ցավերը կարող են շարունակվել մի քանի օր, որից հետո թունավորվածի վիճակը աստիճանաբար բարելավվում է: Սակայն արևադարձային երկրներում աճող թունավոր բույսերը չափազանց վտանգավոր են. դրանց հետ պետք է վարվել մեծ զգուշությամբ:

Թունավոր ծառերից ամենահայտնին հռչակավոր անչարն է: Հենց նրա անունն իսկ ֆիկցիա է: Գիտական գրականության մեջ այն հայտնի է որպես խոշոր ծառ, որը պատկանում է եղինջազգիների ընտանիքին: Աճում է Հնդկաստանում, Ցեյլոնում, Բիրմայում, Մալայզիայում, մինչև Ֆիլիպինյան կղզիները: Սակայն իրականում անչարը այնքան թունավոր չէ, որքան պատկերացնում են շատերը:

Առավել թունավոր են լոգանազգիների ընտանիքի մի շարք ներկայացուցիչները և հատկապես ստրիխնին ցեղի տարատեսակները: Դրանք նույնպես արևադարձային բույսեր են: Ամենաթունավորը ստրիխնոս նուքսվոմիկա կոչվող ծառն է, որի տերևներից ու ճյուղերից ստանում են ստրիխնին թույնը: Հետագայում պարզվեց, որ կուրարե կոչվող թույնը, որից օգտվում են հարավ-ամերիկյան հնդկացիները, իրենից ներկայացնում է ստրիխնոս տոքսիֆերա և այլ բույսերից ստացված թույների խառնուրդ: Այնպես որ, բնության մեջ դա պատրաստի վիճակում մի բույսի մեջ չի հանդիպում:

Այդ սխալ տեղեկությունների և խառնաշփոթության պատճառն այն է, որ տեղացիները ցանկանալով եվրոպացիներից թաքցնել իրենց թույնի գաղտնիքը, նրանց դիտավորյալ կերպով տանում էին սխալ հետքերով:

Ահա այն բոլորը, ինչ որ մեզ հայտնի է այս սարսափազդու բույսերի մասին: Երկրագնդի վրա մարդակեր ծառեր չկան և երբեք էլ գոյություն չեն ունեցել: Ինչ վերաբերվում է թունավոր բույսերին, ապա դրանք միանգամայն անվնաս են, եթե դուք ճանաչում եք դրանց և գիտեք դրանց հետ վարվելու ձևերը:



«Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերի 1972 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր Վարուժան Նալբանդյանին՝ «Արտասովոր տիեզերագնացը», «Ներսեսի քրոջը» և «Սիրանը» պատմվածքների համար:



«Նոր տարվա հեքիաթ», «Նապաստակի մուշտակը» ստեղծագործությունների նկարազարդման համար նկարիչ Ռուբեն Մանուկյանը արժանացավ 1972 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:



# ՆԵՊՏՈՒՆ

1820 թ. ֆրանսիացի աստղագետ Բուվարը որոշեց կազմել Յուպիտերի, Սատուրնի և Ուրանի շարժման օրինաչափությունները ամփոփող աղյուսակներ: Երբ ստուգում էր տվյալները, զարմանքով նկատեց, որ դրանք ճիշտ են միայն առաջին երկու մոլորակների համար: Երրորդը՝ Ուրանը, կարծես չէր ցանկանում ենթարկվել Նյուտոնի տիեզերական ձգողականության օրենքին: Ժամանակի ընթացքում հաշվումների և դիտումների միջև եղած անհամապատասխանությունը շարունակում էր մեծանալ: Ուրանի շարժման աննշտությունը պետք է հետևանք լիներ երկնային անհայտ մարմնի ազդեցության: Բայց դա պետք էր ապացուցել: Այս դժվար հարցի լուծմանը, իրարից անկախ, ձեռնամուխ եղան երկու աստղագետ՝ անգլիացի Ջ. Ադամսը և ֆրանսիացի Ու. Լևերեն: Համարյա միաժամանակ նրանք ապացուցեցին ութերորդ մոլորակի գոյությունը: Բայց Գրինվիչի աստղադիտարանի դիրեկտորը, որին Ադամսը ներկայացրել էր իր ուսումնասիրությունների արդյունքը, չգնահատեց երիտասարդ գիտնականի աշխատանքը:

1846 թ. օգոստոսի 31-ին Լևերեն զեկուցումով հանդես եկավ Ֆրանսիայի գիտությունների ակադեմիայում, հայտնեց նոր մոլորակի տվյալները, ապա խնդրեց ստուգել նաև գրեց գերմանացի աստղագետ, պրոֆեսոր Հալեին և խնդրեց ստուգել երկնային նոր մարմնի կանխորոշված տեղը: Սեպտեմբերի 23-ին Հալեն հեռադիտակով տեսավ նոր մոլորակը՝ Նեպտունը:

Նեպտունի միջին հեռավորությունը Արեգակից 4498 մլն կմ է, մեկ պտույտի տևողությունը՝ 164,78 երկրային տարի: Նրա տրամագիծը 44600 կմ է: Տեսական հաշվումներով Նեպտունի վրա ամենաբարձր ջերմաստիճանը պետք է լինի —200°C:

Նեպտունը ունի երկու արբանյակ: Առաջինը՝ Տրիտոնը, 1864 թ. հայտնաբերել է անգլիացի աստղագետ Ու. Լասելը: Այն Արեգակնային համակարգի մեջ իր մեծությամբ երկրորդ արբանյակն է (տրամագիծը 5000 կմ): Երկրորդ արբանյակը՝ Ներեիդան (տրամագիծը 300 կմ) հայտնաբերել է ամերիկացի աստղագետ Ջ. Կոյպերը, 1949 թ.:

ՍԻՐՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Այն ի՞նչ սուր է վերևում,
Փայլ է տալիս ու շողում,
Նրա զարկից ու ձայնից
Ողջ երկիրն է դողդողում:

Աղջիկ ունեմ մարմարից,
Ճերմա՛կ, ճերմա՛կ ու սիրուն,
Ջուր կդառնա, թե դրսից
Կանչեմ նրան բերեմ տուն:

Այն ի՞նչն է, որ մահ չունի,
Ոչ մի բանից ահ չունի,
Երկնքում թե աշխարհում
Երեք կյանքով է ապրում:



## 3. ԻՐԵՆՑ ՊԱՏԱՌԱՔԱՂՈՎ ՀՅՈՒՐ ԳՆԱՑՈՂՆԵՐԸ

Ամենայն հավանականությամբ, պատառաքաղի արմատավորումն արտակարգ դժվար գործ է եղել, և պետք է դարեր անցնեին, մինչև որ դա հայտնվեր Եվրոպայում: Նման առարկայի մասին համառ, բայց ապարդյուն մտորումներ ունեին հին հույները: Նրանց ստեղծագործական միտքը ուտելու համար հատուկ ձեռնոցներից և մատներին հագցվող ոսկրե ծայրակալներից այն կողմ չանցավ: Ժամանակակից քաղաքակրթության առարկաները երբեմն ծնունդ են առել ամենից առաջ անսպասելի ձևով և անսպասելի վայրերում: Եվ եթե, ասենք, Եվրոպայում, Վերածննդի շրջանում, սեղանակիցները լուսավորության և առաջադիմության մասին զրուցելիս՝ հերթական ճաշատեսակը գոհհկաբար ուտում էին ձեռքերով, ապա Ֆիջի կղզիների բարբարոսները նույն այդ ժամանակ, իրենց խնջույքներին պատառաքաղ էին օգտագործում:

Հետաքրքիր է, որ Եվրոպայում երկար ժամանակ պատառաքաղով ուտելը համարվում էր պճնամոլություն: Լյուդովիկոս XIV-ը պատառաքաղ օգտագործող պալատական կանանց ցուցադրական նրբաճաշակությունից սրտնեղելով, ծառաներին հատկապես հրա-



# ՄԱՐԴԻԿ ՍԵՂԱՆԻ ՇՈՒՐՋԸ

*Ալ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

մայում է մազեր գցել նրանց ափսեների մեջ։ Կարելի է պատկերացնել, թե ինչ թաքուն հրճվանք էր ապրում թագավորը՝ տեսնելով նրանց տանջանքները։

— Բժիշկ է, երիտասարդ, արմատական նիհիլիստ չէ, բայց, գիտե՞ս ինչ, դանակով է ուտում...— կշտամբանքով նկատում է Աննա Կարենինան վեպի հերոսներից մեկի մասին։

Եվ իսկապես, ինչո՞ւ դանակով ուտել, երբ կա պատառաքաղ։ Սակայն անցյալ դարում այդ վատ սովորույթը Միացյալ Նահանգներում բարձրացրին գրեթե ազգային հարցի մակարդակի։ Երկրում իսկական շարժում է ծավալվում, որպեսզի ամերիկացիները ոչ թե պատառաքաղով ուտեն, այլ դանակով։ «Դանակի կողմնակիցները» ասում էին, որ ամերիկացիները, ինչպես ամեն մի այլ ժողովուրդ, պետք է ունենան իրենց ազգային սովորույթները։ Ինչո՞ւ իբրև նման սովորություն չընդունել դանակով ուտելու եղանակը։ Բայց և հանձնարարվում էր զգուշությամբ անել դա. «մեծ կտորներ չվերցնել և շրթունքները չհըպել դանակի բերանին»։ Այդ շարժումն այնպիսի թափ առավ, և այնքան հեռուն գնացին, որ Միացյալ Նահանգների պրեզիդենտ Գ. Կլիվլենդը մի անգամ հրապարակով ձեռք չմեկնեց մի հրատարակչի միայն այն պատճառով, որ նա պաշտպանում էր «դանակի գաղափարը»։

Երբ ճաշի սպասքը կամաց-կամաց մտավ կենցաղի մեջ, սկզբներում, բնականաբար, դա խիստ հազվագյուտ բան էր։ Միայն հարուստ մարդիկ կարող էին իրենց թույլ տալ որոշ քանակությամբ ճաշի ամանեղեն ունենալ։ Վոլոցկի իշխան Իվան Բորիսովիչը իր կտակի մեջ (1504 թ.) իբրև մեծ արժեք թվում է այն ամանեղենը, որ թողնում է իր ժառանգներին. ճաշի հինգ խոր պնակ, մեկ քացախաման, մեկ աղաթաս, տասնմեկ գդալ, երկու մեծ գավաթ, հինգ փոքր գավաթ, երեք բաժակ, արծաթե թավա...

Հյուր գնալիս մարդիկ, սովորաբար, իրենց հետ տանում էին դանակ, պատառաքաղ կամ գդալ։ Այդպես էին անում ասպետները միջնադարյան Եվրոպայում։ Իսկ երբ Իվան Ահեղի հրավերով ներկայացած օտարերկրացի թագաժառանգին խնջույքի ժամանակ դանակ, պատառաքաղ և ափսե չեն տալիս՝ նա հարկադրված է լինում ժամանակ առ ժամանակ փոխ վերցնել կողքին նստած բոյարից։

Կարելի է հասկանալ տանտիրոջը, որ այնքան էլ հաճությամբ չէր հյուրասիրում իր ամանեղենով, գերադասում էր, որ հյուրերը հետները բերեն իրենց տնից. նրանք սովորություն ունեին դուր եկած գավաթը կամ պնակը հետները տանել։ Երբ բանակցությունների հաջող ավարտից հետո, թագավորն ըստ սովորույթի մեղրաջրով հյուրասիրում էր օտարերկրյա դեսպաններին, խմելուց հետո, նրանք հաճախ գավաթը թաքցնում էին ծոցում։

Ամանեղենն անհետանում էր նաև Ֆրանսիայի արքունական ընդունելությունների ժամանակ, դեռ դրանից էլ վաղ՝ հռոմեական կայսրերի խրախճանքներում։ Մի անգամ կայսր Կլավդիոսի կազմակերպած խնջույքի ժամանակ կորչում է մի ոսկե գավաթ։ Կասկածն ընկնում է հայտնի ազնվական Վինիուսի վրա։ Ու թեև դա կասկած էր լոկ, հաջորդ անգամ Վինիուսի առջև, ի տարբերություն մյուս հյուրերի, դրվում է կավե գավաթ։

Անցնում է դար դարի հետևից, և ամանեղեն թոցնելու սովորությունն էլ նկատելիորեն թուլանում է։ Հավանորեն այստեղ դեր է խաղում բարքերի ընդհանուր բարելավումը։ Իբրև կանոն, այժմյան հյուրը ուրիշի ամանը երբեք ծոցը չի գցի, նրա գործած ամենամեծ մեղքը հավանորեն



---

Սկիզբը՝ 1972 թ. № 12-ում և 1973 թ. № 1-ում։



որևէ բան կոտրելը կլինի: Իհարկե, դրա համար հյուրից մի առանձին շնորհք չի պահանջվում, բայց նման դեպքերում ստեղծված վիճակը հյուրընկալ տանտիրոջից կամ ավելի շուտ՝ տանտիրուհուց, որոշ շնորհք պահանջում է: Ենթադրվում է, որ նման պարագայում դուք այնքան նրբանկատ կլինեք, որ չեք խորացնի ընդհանուր շփոթությունը. «Ա՜խ, այս ի՜նչ եղավ սփռոցս» կամ «Դա իմ սիրած գավաթն էր» խոսքերով: Հավանաբար դուք հիշում եք այն հայտնի ճշմարտությունը, որ բարեկիրթ լինելը ոչ թե սոուսամանը սփռոցի վրա շուռ չտալն է, այլ չնկատելը, երբ դա անում է մեկ ուրիշը: Նամանավանդ, եթե դա ձեր տանն է պատահում, ձեր սփռոցի վրա: Բայց չնկատելն էլ քիչ է: Եթե որևէ մեկի անզգուշության հետևանքը վերացնեք մռայլ դեմքով կամ սեղմված շրթունքներով, ձեր ողջ կերպարանքով դժգոհություն արտահայտելով, դա քիչ կտարբերվի բարձրաձայն դառնաղետ ողբից: Ամենից լավը, իհարկե, նման միջադեպը կատակի տալն է, մի ուրախ խոսքով լարվածությունը ցրելը: Երբ Պետրոս առաջինին ընդունում են Կիև-Պեչորսկ մայրավանքում, նրա վրա է թափվում մատուցարանում դրված գինով լի ըմպանակների պարունակությունը: Ըմպանակները փշուր-փշուր են լինում: Թագավորը գունատվում է, որ գայրույթի պոռթկման նշան էր, և անհայտ է, թե ինչով կվերջանար այդ միջադեպը, եթե երիտասարդ վանականներից մեկը չգոչեր.

— Այդպես էլ ձեր թշնամյա՜ց ջախջախեցեք, թագավո՜րդ մեծ:

Պետրոսը քահ-քահ ծիծաղում է, նրան հետևում են մյուսները: Եվ այս միջադեպը, որ կարող էր տհաճ լինել որքան հյուրի, նույնքան էլ հյուրընկալների համար, կատակի է տրվում: Հետաքրքրական է, որ Պետրոսը չմոռացավ ուրախ ու սրամիտ վանականին. շուտով նա վանահայր ձեռնադրվեց.

Բայց նորից դառնանք փշրված գավաթներին: Կան մարդիկ, որ ուտում-խմում են հասարակ, ճաքած-մաշված ամաններից, բայց հենց որ տոնական օրը հյուրեր են գալիս, պահարանից դուրս է բերում այն սպասքը, որ միայն և միայն նման դեպքերի համար է պահվում: Մենք չենք ուզում կռշտամբել այդ մարդկանց կամ վիճել նրանց հետ, եթե այս չնչին երևույթի տակ չլիներ, ինչպես մեզ է թվում, որոշակի մի աշխարհընկալում՝ կյանքը բաժանել օրացուցային միօրինակ լի օրերի և տոնական օրերի, երբ ծածկոցները վերցվում են կահույքի վրայից, իսկ գեղեցիկ գավաթները հանդիսավոր կերպով բազմում են սեղանին: Հենց դրա հետ է, որ չէինք ուզի համաձայնել:

Արժե՞ սեփական կամքով զրկվել ամենօրյա աչք շոյող գեղեցկությունից: Կարիք կա՞ զուրկ մնալ հաճույքից: Մի՞թե երկար օրեր ու շաբաթներ ապրում ենք հանուն մի կարճատև երեկոյի, երբ նշում ենք հերթական մի տոն, ծննդյան օր կամ այլևայլ հանդեսներ: Ո՜չ: Պետք է այնպես անենք, որ խնդությունը մեզ ուղեկցի ամեն օր, և ոչ թե միայն շաբաթ ու կիրակի: Հարկավոր է,



որ գեղեցիկ իրերը, որոնք կյանքն ավելի են գեղեցկացնում, մեզ հետ լինեն ամեն օր և չթախծեն սնդուկներում և պահարաններում՝ սպասելով այն օրվան, երբ հյուրեր զարմացնելու առիթ ունենան: Եվ թող ժամանակ առ ժամանակ մի բաժակ էլ կոտրվի, բյուրեղապակյա ըմպանակը փշուր-փշուր լինի և վերջապես, փայլեցրած կահույքի վրա մի քերծվածք հայտնվի: Թող մարդն իրերից երկար ապրի և ոչ թե հակառակը: Երկու հազար տարի առաջ այսպիսի մի դարձվածք է եղել. «Մարդը չէ շաբաթ օրվա համար, շաբաթ օրը՝ մարդու»:

Մարդը չէ իրերի համար, այլ իրերը՝ մարդու:

*(Վերջը՝ հաջորդ համարում)*

*Թարգմ. Ս. ԱՑՈՒՆՑԻ*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ «ՊԻՈՆԵՐ» № 12

*ԲԱՌԱՇՂԹԱ «ՍՍՀՄ-50»*

*1. Կրասնոյարսկ։ 2. «Կալևիպոեգ»։ 3. Գիլեյա։ 4. «Սպարտակ»։ 5. Կարագանդա։ 6. Ախունդով։ 7. Վիտոլս։ 8. Լանդաու։ 9. Ուկրաինկա։ 10. Աշտարակ։ 11. Կոմարով։ 12. «Վոլգա»։ 13. Ամիրանի։ 14. Իսահակյան։ 15. «Նամուս»։ 16. Սիմոնյան։ 17. Նասիրովա։ 18. Աշխաբադ։ 19. «Դավլուրի»։ 20. Իրտիշ։ 21. Շչորս։ 22. Մյասնիկյան։ 23. Նալբանդյան։ 24. «Նաիրի»։ 25. Իժևսկ։ 26. Կալինին։ 27. Նալչիկ։ 28. Կուպալա։ 29. «Ավրորա»։ 30. Աքին։ 31. Նարվա։ 32. Արտեկ։ 33. Կարովին։ 34. Նար-Դոս։*

# ԹՂԹԻ ՄԱԿՈՒԼԱՏՈՒՐԱՅԻ ՀԱՎԱՔՄԱՆ ՄՐՑՈՒՅԹ

1972—73 ուս. տարում հայտարարված է թղթի մակուլատուրայի հավաքման համամիութենական մրցույթ: Ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող հումքի հավաքումն ու մթերակայաններին հանձնումն ապահովելու նպատակով պիոներական կազմակերպության հանրապետական խորհուրդը, ՀՍՍՀ լուսավորության մինիստրությունը և երկրորդ հումքի մթերման նախնական վերամշակման հանրապետական վարչությունը հանձնարարում են պիոներական դրուժինաներին (յուրաքանչյուր ջոկատի, օղակի, պիոների ակտիվությունը բարձրացնելու համար) անցկացնել միջջոկատային մրցույթներ, որոնց ընթացքը պետք է լուսաբանվի պատի թերթերի, դպրոցի ռադիոցանցի միջոցով: Նաև զրույցներ կազմակերպել թղթի խնայողության անհրաժեշտության մասին:

Մրցույթը համարվում է պիոներական ջոկատների «Միշտ պատրաստ» երթի «Պիոներկառույց» երթուղու բաղկացուցիչ մասը:

## ՄՐՑՈՒՅԹԻ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Մրցույթի հաղթողներ կհամարվեն այն դպրոցները, որոնք կկատարեն մակուլատուրայի հավաքման հետևյալ պայմանները.

1-ին տեղ՝ յուրաքանչյուր աշակերտի 18 կգ չափով:
2-րդ տեղ » — » » — » 15 կգ » — »
3-րդ տեղ » — » » — » 10 կգ » — »

Արդյունքների հավասարության դեպքում հաղթողը կորոշվի պիոներական կազմակերպության խորհրդի, մթերող կազմակերպության, ժողկրթբաժնի համատեղ կազմակերպչական աշխատանքով:

Դպրոցական կոլեկտիվների համար սահմանված է դրամական չորս պարգև.

Մեկ 1-ին մրցանակ — 200 ռուբլի:
Երկու 2-րդ մրցանակ — 150 ռուբլի:
Մեկ երրորդ մրցանակ — 100 ռուբլի:

Մթերակայանները պիոներական կազմակերպության շրջանային, քաղաքային խորհուրդների և ժողկրթբաժինների հետ մրցույթի արդյունքները կամփոփեն 1973 թվականի հունիսի 30-ին:

Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 06172: Պատվեր՝ 120: Տպաքանակ՝ 83506: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16/III 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդալյարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

# ԳԵՏԸ

*ԳՐԻԳՈՐ ՄԱՔՄԱՆՅԱՆ*

Գետն է հոսում ձորի միջով,
Ջուրը լցնում խենթ քրքիջով,
Չորս կողմ փռում շաչ ու շառաչ
Ու հևիհև վազում առաջ...
Ահա այստեղ նրա ճամփան
Ժայռն է փակել մեջքով իր լայն,
Մունկ է տալիս գետը, ճեղվում
Ու դարավոր հունից շեղվում:
Կարկաչում է, առաջ անցնում,
Էլ ժայռ ու քար չի հարցնում,
Սակայն դու տես խորխորատին,
Իր երախն է բացել մթին:
Ինչպես վիշապ մի ոխակալ
Նա ուզում է գետին կուլ տալ,
Բայց ոստնում է գետը հանկարծ
Ու գլխիվայր նետվում է ցած:
Դառնում է մի ջրվեժ արծաթ,
Դառնում աղջիկ մի հերարձակ,
Ծիծաղում է, ծափում նորից
Ու նազանքով փախչում ձորից:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*